թաքեր կապիտալ: // *Փխբ.* A son actif, իր հաշվի վրա, իր անվան դիմաց:

– f. *Ռազմ.* Մշտական՝ գործող բանակ:

**actinie** f. *Կենդբ.* Ակտինիա, ծովային անեմոն:

**actinique** adj. *Ֆիզ.* Ճառագայթային, լուսային:

**actinisme** m. *Ֆիզ.* Ճառագայթների քիմիական ակտիվություն:

**actinium** [aktinjɔm] m. *Քիմ.* Ակտինիում:

**actiniomètre** m. Ճառագայթաչափ:

**action** f. Գործողություն. գործ, արարք, սխրանք: // Գործունեություն: // Ազդեցություն, ներգործություն (sur). action toxique, թունավոր ներգործություն: // Շարժվածք, շարժուձև: // *Թատր.* Գործողություն, սյուժե: // *Ռազմ.* Մարտ, կռիվ, ընդհարում. action d'éclat, սխրագործություն. action combinée, փոխկապակցված գործողություն. entrer en action, ռազմական գործողություններ սկսել: // *Իրավբ.* Դատավարություն. action civile, քաղաքացիական հայց. action criminelle, քրեական հայց. intenter une action, հայց ներկայացնել: // *Ֆին.* Արժեթուղթ, բաժնետոմս. société par actions, բաժնետիրական ընկերություն: // *Տեխ.* Գործողություն. machine à simple action, մի գործողություն կատարող մեքենա: // *Եկեղ.* Action de grâces, գոհաբանական մաղթանք, գոհություն, շնորհակալություն (աստծուն):

**actionnable** adj. *Իրավբ.* Ընդդատյա, ենթադատ:

**actionnaire** s. *Ֆին.* Ակցիոներ, բաժնետեր:

**actionnariat** m. Բաժնետերերը, բաժնետիրություն (համակարգը):

**actionner** v. tr. (1): *Իրավբ.* Դատական գործ հարուցել. actionner en dommages et intérêts, վնասների փոխհատուցման գործ հարուցել: // *Տեխ.* Աշխատեցնել, գործի դնել:

**activation** f. Ակտիվացում: // *Ֆիզ.* Activation nucléaire, ռադիոակտիվ դարձնելը:

**activement** adv. Ակտիվորեն, ակտիվաբար, եռանդուն կերպով:

**activer** v. tr. (1): Արագացնել (une affaire). բորբոքել, թեժացնել (le feu). արագացնել, շտապեցնել (la marche) [տե՛ս Accélérer]: // *Բժշկ.* Ակտիվացնել (la digestion). boue activée, ռադիոակտիվ ցեխ: // *Ֆիզ.* Ռադիոակտիվ դարձնել: // *Խսկց.* Գրգռել, բորբոքել (զգն):

– v. pr. **S'activer,** իրար անցնել, դեսուդեն ընկնել. s'activer à, շտապել, փութալ, աճապարել:

**activisme** m. Ակտիվիզմ:

**activiste** s. Ակտիվիստ:

– adj. Ակտիվիստական:

**activité** f. Ակտիվություն, աշխուժություն, ջանասիրություն, ժրաջանություն, աշխատասիրություն, գործունություն, գործունեություն. activités politiques, քաղաքական գործունեություն. débordant d'activité, եռանդով լի. en pleine activité, ուժերի ծաղկման շրջանում: // *Իրավբ.* Աշխատանքային գործունեություն (d'un fonctionnaire): // *Ռազմ.* Զինվորական ծառայություն գործող բանակում. en activité, գործող բանակում ծառայող:

**actrice** f. *Թատր.* Դերասանուհի (տե՛ս Acteur):

**actuaire** s. *Իրավբ.* Ապահովագրական ընկերության վիճակագիր:

**actualisation** f. Առկայացում:

**actualiser** v. tr. (1): Առկայացնել:

**actualité** f. Այժմեականություն, արդիականություն. d'actualité, արդիական, ակտուալ: // Pl. Օրվա նորություններ: // *Կինո.* Կինոխրոնիկա, կինոժուռնալ: // *Փխբ.* Au premier plan de l'actualité, ուշադրության կենտրոնում:

**actuel, elle** adj. Արդի, այժմյան, արդիական, այժմեական. à l'heure actuelle, ներկայումս, այժմ, այս պահին: // *Փիլ.* Իրական, առկայական:

**actuellement** adv. Այժմ, ներկայումս:

**acuité** f. Սրություն (d'un clou): // *Բժշկ.* Սաստկություն (d'une douleur). սրատեսություն (de la vue): // *Փխբ.* Սուր՝ բարձր լինելը (d'un bruit). սրություն (de la pensée):

**acuminé, ée** adj. *Բսբ.* Փշատերև, ասեղնատերև:

**acuponcteur** m. *Բժշկ.* Ասեղնաբույժ:

**acuponcture** f. *Բժշկ.* Ասեղնաբուժություն:

**acutangle** adj. *Մաթ.* Սրանկյուն:

**acyclique** adj. Ոչ պարբերական:

**A. D.** [ade] *Հպվ.* Anno Domini (Քրիստոսի ծննդից հետո, մեր թվարկության), մ.թ.:

**adage** m. Առած, ասացվածք:

**Adam** [adɑ̃] m. Ադամ. ne connaître ni d'Eve ni d'Adam, բոլորովին անծանոթ լինել: // *Բժշկ.* Pomme d'Adam, ադամախնձոր:

**adamantin, e** adj. Ադամանդե, ադամանդյա:

**adaptabilité** f. Հարմարվողականություն:

**adaptable** adj. Հարմարվող, հարմարեցվող:

**adaptateur, trice** s. Վերամշակող (գրական երկը ֆիլմի սցենարի, թատերական ներկայացման հարմարեցնող):

**adaptation** f. Հարմարեցում, հարմարվելը. faculté d'adaptation, հարմարվողականություն: // *Ռադիո.* Վերամշակում: // *Կինո.* Էկրանավորում, գրվածքի՝ կինոնկարի համար հարմարեցնելը:

**adapter** v. tr. (1): Հարմարեցնել, վերամշակել. adapter un roman de, մեկի վեպը էկրանավորել՝





թատերականացնել. adapter à, հարմարեցնել մի բանի: // *Ռադիո.* Վերամշակել:

– v. pr. **S'adapter,** հարմարվել (à des circonstances). համակերպվել (à des nécessités):

**addenda** [adɛ̃nda] m. Հավելված:

**Addis-Abéba** [adisabeba] *Աշխգր.* Ադիս Աբեբա:

**additif, ive** adj. Լրացուցիչ, հավելյալ:

– m. Լրացուցիչ կետ՝ հոդված. հավելում, հավելված:

**addition** f. Հավելում (տե՛ս Augmentation). additions progressives, աստիճանական աճ: // *Մաթ.* Գումարում, գումար. faire une addition, գումարել: // *Խսկց.* Հաշիվ (note):

**additionnel, elle** adj. Լրացուցիչ, հավելյալ: // *Ֆին.* Centimes additionnels, լրացուցիչ հարկ: // *Իրավբ.* Clause additionnel, հավելում, հավելված:

**additionner** v. tr. (1): *Մաթ.* Գումարել, ավելացնել: // *Փխբ.* Ավելացնել, խառնել (mêler). additionner de, խառնել մի բանի հետ. նոսրացնել (ջրով):

**additionneuse** f. *Տեխ.* Գումարիչ մեքենա:

**adducteur** adj. m. *Բժշկ.* Շարժիչ: // *Տեխ.* Մատակարարող, սնուցող:

– m. *Բժշկ.* Շարժիչ մկան: // *Տեխ.* Սնուցախողովակ, սնուցման խողովակ:

**adduction** f. *Բժշկ.* Մոտեցնող շարժում (մկանի): // *Տեխ.* Մատակարարում, սնուցում. adduction d'eau, ջրամատակարարում, ջրատար խողովակ:

**adénite** f. *Բժշկ.* Ադենիտ, գեղձաբորբ, գեղձատապ:

**adénoïde** adj. *Բժշկ.* Գեղձային, նշագեղձային. végétations adénoïdes, նշանագեղձերի գերաճ:

**adénome** m. *Բժշկ.* Գեղձուռուցք, ադենոմա:

**adent** m. *Տեխ.* Թործ, քարթ, ագույց, թաթ. կեռ, սեպ, ատամ, ատամիկ:

**adenter** v. tr. (1): *Տեխ.* Ագուցել, ագուցավորել:

**adepte** s. Կողմնակից, հետևորդ. իրազեկ, իրագետ, գիտակ:

**adéquat, ate** [adekwa, -kwat] adj. Համապատասխան, համարժեք, ճշգրիտ, իսկական:

**adéquation** [adekwasjɔ̃] f. Համապատասխանություն, համարժեքություն:

**adhérence** f. Հարում, հարելը: // Կպչունություն, դյուրամածություն (de la colle): // *Ավտ.* Ձգում, ձգելը (des roues): // *Բժշկ.* Կպում:

**adhérent, ente** adj. Հարող, անդամակից, կողմնակից: // Կպչուն, մածուցիկ (collant):

– s. Կողմնակից, համախոհ, հետևորդ, անդամ:

**adhérer** v. intr. (5): Կպչել (à): // *Փխբ.* Հարել, միանալ, անդամակցել (à), adhérer à un parti, անդամակցել կուսակցության, կուսակցության անդամ դառնալ:

**adhésif, ive** adj. Կպչուն, կպցնող:

– m. Կպչուն ժապավեն:

**adhésion** f. Կպչելը, փակչելը, փակչում: // *Փխբ.* Հարում, միացում, անդամակցություն (à). donner son adhésion à, համաձայնել, հավանություն տալ:

**adhésivité** f. Կպչունություն:

**ad hoc** [adɔk] loc. adv. Հատուկ, հարմար. comité ad hoc, հատուկ կոմիտե. l'homme ad hoc, ամենահարմար մարդը որևէ գործի համար:

**ad hominem** [adɔminɛm] adj. Argument ad hominem, անձնական փաստարկում:

**adieu!** interj. Մնա՜ս բարով, գնա՜ս բարով:

– m. Հրաժեշտ. baiser d'adieux, հրաժեշտի համբույր. faire ses adieux à, հրաժեշտ տալ. sans adieu, առանց հրաժեշտի:

**adipeux, euse** adj. Ճարպային, ճարպոտ:

**adiposité** f. Ճարպերի կուտակում:

**adjacence** f. *Մաթ.* Կցություն:

**adjacent, ente** adj. Հարակից (pièces). մերձավոր, սահմանակից (propriétés): // *Մաթ.* Կից (angles):

**Adjarie** f. *Աշխգր.* Աջարիա:

**adjectif, ive** adj. Ածականական:

– m. *Քրկն.* Ածական անուն:

**adjectivement** adv. Ածականաբար:

**adjoindre** v. tr. (59): Օգնական նշանակել (զգն): // Զուգակցել, միացնել միավորել (à):

– v. pr. **S'adjoindre,** օգնական վերցնել. s'adjoindre à, միանալ:

**adjoint, ointe** adj. Կցորդված:

– s. Օգնական, տեղակալ. adjoint au maire, քաղաքագլխի տեղակալ. commissaire adjoint, փոխլիազոր. professeur adjoint, ասիստենտ:

**adjonction** f. Հավելում, կցում:

**adjudant** m. *Ռազմ.* Համհարզ: // *Ծով.* Adjudant principal, գլխավոր բոցման: // **Adjudant-chef,** m. *Ռազմ.* Գլխավոր համհարզ:

**adjudicataire** s. Աճուրդագնորդ, աճուրդառու:

**adjudicateur, trice** s. Աճուրդախոս, աճուրդային գործակալ:

**adjudication** f. *Իրավբ.* Աճուրդավաճառք. adjudication au rabais, աճուրդավաճառք ամենացածր գին առաջարկողին. mettre en adjudication, աճուրդի հանել. par voie d'adjudication, աճուրդի միջոցով, աճուրդով:

**adjuger** v. tr. (7): Վաճառված հայտարարել (աճուրդի ժամանակ). une fois, deux fois, trois fois, adjugé, մեկ, երկու, երեք, վաճառված է:

– v. pr. **S'adjuger,** յուրացնել, սեփականացնել, վերցնել (տե՛ս Approprier [s']):

**adjuration** f. Աղաչանք, պաղատանք, աղերսանք:

**adjurer** v. tr. (1): Աղաչել, պաղատել, աղերսել. երդվեցնել: // *Եկեղ.* Աստծու անունով կարգադրել, երդվեցնել:

**adjuvant, ante** adj. Օգնող, նպաստող:

– m. Լրացուցիչ՝ նպաստող միջոց:

**ad libitum** [adlibitɔm] adv. Ըստ ցանկության:

**A.D.M.** [adeɛm] f. *Հպվ.* Arme de destruction massive, զանգվածային ոչնչացման զենք:

**admettre** v. tr. (64): Համաձայնել, թույլ տալ. հանդուրժել, զիջել. համաձայնել, ընդունել:

**administrateur, trice** s. Տնօրեն, կառավարիչ (de société). խնամակալ (de succession). administrateur judiciaire, դատական կառավարիչ:

**administratif, ive** adj. Վարչական:

**administration** f. Կառավարում, ղեկավարում. վարչություն, կառավարչություն, ադմինիստրացիա: // *Բժշկ.* Նշանակում (d'un remède): // *Իրավք.* Հայթայթում (d'une preuve): // *Ռազմ.* Officier d'administration, պարետ:

**administrativement** adv. Վարչականորեն:

**administré, ée** s. Ենթակա, ստորադաս անձ:

**administrer** v. tr. (1): Ղեկավարել, կառավարել (une enterprise, un pays): // *Իրավք.* Կիրառել (la justice). հայթայթել, բերել (une preuve): // Նշանակել (un remède): // *Եկեղ.* Կրոնական պաշտամունք կատարել, պաշտել (les sacrements): // *Խսկց.* Հասցնել (un coup). administrer une raclée à qqn, մեկին լավ ծեծ տալ:

**admirable** adj. Հիանալի, սքանչելի: // Հոյակապ:

**admirablement** adv. Սքանչելիորեն, կատարելապես:

**admirateur, trice** s. Երկրպագու:

– adj. Հիացական:

**admiratif, ive** adj. Հիացական:

**admiration** f. Հիացմունք, սքանչացում. en admiration devant, հիացած, զմայլված, սքանչացած. faire l'admiration de, հիացմունքն առաջացնել:

**admirativement** adv. Հիացած, հիացմունքով:

**admiré, ée** p. p., adj. Պաշտված, հիացմունքի արժանացած (de, par):

**admirer** v. tr. (1): Հիանալ, սքանչանալ, զմայլվել:

**admis, ise** adj. Ընդունված:

**admissibilité** f. Ընդունելիություն, թույլատրելիություն: // Գրավոր քննության արդյունքում բանավոր քննությանը թույլատրված լինելը:

**admissible** adj. Թույլատրելի: // Ընդունելի (excuse, preuve). // Բանավոր քննությանը թույլատրված: // *Իրավք.* Admissible en droit, օրենքի առջև պատասխանատվություն կրող:

**admission** f. Թողնելը, թույլտվություն (à): // *Տեխ.* Ներթողում. admission d'air, օդի մուտք. avance à l'admission, նախօրոք ներս թողնելը. soupape d'admission, ներթողման փական:

**admittance** f. *Էլ.* Հաղորդելիություն:

**admixtion** [admikstjɔ̃] f. *Բժշկ.* Միախառնում:

**admonestation** f. Նկատողություն, հանդիմանություն, կշտամբանք:

**admonester** v. tr. (1): Նկատողություն անել, հանդիմանել, կշտամբել:

**admoniteur, trice** s. Նկատողություն անող:

**admonition** f. Նկատողություն, հանդիմանություն, կշտամբանք:

**A.D.N.** [adeɛn] m. *Հպվ.* Acide désoxyribonucléique, դեզօքսիռիբոնուկլեինաթթու, ԴՆԹ:

**adolescence** f. Պատանեկություն:

**adolescent, ente** adj. Պատանի, դեռահաս, դեռատի:

– s. Պատանի, պատանյակ, աղջնակ:

**Adonis** [adɔnis] m. Ադոնիս: // *Բսբ.* Կուժկոտրուկ: // *Խսկց.* Գեղեցիկ երիտասարդ:

**adoniser** v. tr. (1): Պճնել, զուգել-զարդարել:

– v. pr. **S'adoniser,** պճնվել, զուգվել-զարդարվել:

**adonné, ée** adj. Անձնատուր, տրված (à): // Նվիրված (à):

**adonner (s')** v. pr. (1): Տրվել, նվիրվել, անձնատուր լինել:

**adoptable** adj. Ընդունելի:

**adoptant, ante** s. Որդեգրող:

**adopté, ée** adj. Ընդունված. որդեգրված (enfant):

– s. Որդեգիր, հոգեզավակ:

**adopter** v. tr. (1): *Իրավք.* Որդեգրել (un enfant). ընդունել (une loi). վերցնել (un nom). վավերացնել (un procès-verbal). հավանություն տալ, ընդունել (une proposition): // *Քրկն.* Փոխառություն կատարել, փոխառել (un mot): // *Փխբ.* Անդամագրվել (une cause). ընդունել, որդեգրել (une idée). հետևել (la mode). կազմել (une opinion):

**adoptif, ive** adj. Որդեգրված, որդեգրյալ: // Որդեգրող:

**adoption** f. Որդեգրում (d'un enfant, d'une idée). ընդունում (d'une loi). վերցնելը (d'un nom). հետևելը (d'une mode). կազմելը (d'une opinion). pays d'adoption, երկրորդ հայրենիք:

**adorable** adj. Պաշտելի: // *Խսկց.* Սքանչելի, հմայիչ, սիրունիկ, անուշիկ:

**adorablement** adv. Սքանչելիորեն:





**adorateur, trice** s. Երկրպագու: // *Խսկց.* Պաշտող, երկրպագող:

**adoration** f. *Եկեղ.* Երկրպագություն: // *Խսկց.* Պաշտում, պաշտելը, երկրպագելը, կաթոգին սեր:

**adorer** v. tr. (1): *Եկեղ.* Երկրպագել, պաշտել: // *Խսկց.* Պաշտել, աստվածացնել, անձնուրաց սիրել. il adore chanter, նա շատ է սիրում երգել, նրա խելքը գնում է երգելու համար:

**ados** m. Հողապատնեշ. զառիվայր, լանջ, շեպ:

**adossement** m. Հենում, հենվելը:

**adosser** v. tr. (1): Հենել, դեմ տալ (à):

– v. pr. **S'adosser,** հենվել, թիկնել (à):

**adoubement** m. Ասպետի կոչում տալու հանդիսավոր արարողություն: // Զրահազգեստ:

**adouber** v. tr. (1): Ասպետի կոչում տալ (un chevalier). ուղղել, տեղը դնել. ժամանակավորապես տեղաշարժել (շախմատի խաղաքարը):

**adoucir** v. tr. (2): Քաղցրացնել (une boisson): // Կլորացնել (un contour). թուլացնել (une lumière). մեղմացնել (une teinte). բարեխառնել (la température): // *Տեխ.* Հղկել, կոկել, ողորկել (l'acier, le bois). փափկացնել (la fonte): // *Փխբ.* Մեղմացնել, թուլացնել (une douleur, une souffrance). մեղմել, մեղմացնել (une expression). հանգստացնել, թուլացնել (l'irritation). նրբացնել, հղկել (les manières). թեթևացնել (une peine). մեղմացնել, թուլացնել (la physionomie, les sentiments, le ton). հանդարտեցնել, խաղաղեցնել (la vie):

– v. pr. **S'adoucir,** բարեխառնվել (temps): // Մեղմանալ, փափկանալ (caractère). մեղմանալ, թուլանալ (douleur). մեղմանալ, քնքշանալ (voix):

**adoucissement** m. Քաղցրացում (d'une acidité, d'une amertume). մեղմացում (des contours, de la lumière). բարձրացում (de la température): // *Տեխ.* Հղկում, ողորկում (de l'acier). փափկացում (de la fonte): // *Փխբ.* Մեղմացում, փափկացում (du caractère). թուլացում, թեթևացում (d'une douleur, d'une peine). չափավորում (des paroles). մեղմացում (du ton):

**adoucisseur** m. Ջրափափկացուցիչ, ջուրը փափկացնող սարք:

**ad patres** [adpatʀɛs] adv. *Խսկց.* Aller ad patres, մեռնել, այն աշխարհը՝ նախնիների մոտ գնալ («ուղևորվել առ հարս»). envoyer qqn ad patres, այն աշխարհին ուղարկել, սպանել:

**adragante** adj. f. Gomme adragante, խեժ:

**adrénaline** f. *Բժշկ.* Ադրենալին:

**adressage** m. *Ինֆ.* Հասցեավորում:

**adresse** f. Հասցե. à l'adresse de, հասցեով: // Ուղերձ: // Ճարպկություն, վարպետություն. tour d'adresse, աճպարարություն: // Հնարագիտություն, հնարամտություն. խորամանկություն:

**adresser** v. tr. (1): Հասցեագրել, ուղարկել, հղել, առաքել (une lettre, un paquet): // Ուղղել (une prière) [à]. adresser des reproches, հանդիմանել. adresser une requête, դիմել. adresser un sourire (à qqn), ժպտալ (մեկին): // Ներկայացնել, երաշխավորել (qqn) [à]:

– v. pr. **S'adresser** (à), դիմել: // Հատկացվել, հասցեագրվել:

**adret** m. *Աշխգր.* Արևահայաց լանջ:

**Adriatique** adj. Ադրիական (Ադրիատիկ):

– f. *Աշխգր.* Ադրիական (Ադրիատիկ) ծով:

**adroit, oite** adj. Հաջողաձեռն, ձեռքից հաջողակ, ճարտար: // *Փխբ.* Հնարամիտ, հնարագետ, ճարպիկ:

**adroitement** adv. Ճարպկորեն, ճարպկությամբ, հնարագիտությամբ:

**adulateur, trice** adj. Շողոքորթ, քծնող:

– s. Շողոքորթ՝ ստորաքարշ՝ քծնող մարդ, պնակալեզ:

**adulation** f. Շողոքորթություն, քծնանք, ստորաքարշություն, պնակալեզություն:

**aduler** v. tr. (1): Շողոքորթել, քծնել (տե՛ս Flatter):

**adulte** adj., s. Չափահաս:

**adultération** f. Կեղծում, խարդախում:

**adultère** adj. Ամուսնական հավատարմությունը խախտող, դավաճանող:

– m. Ամուսնական հավատարմության խախտում, դավաճանություն:

– s. Դավաճանող՝ շնացող կին՝ տղամարդ:

**adultérer** v. tr. (5): Դավաճանել (կնոջը, ամուսնուն), շնանալ:

**adultérin, ine** adj. Անօրինական:

– s. Անօրինական զավակ:

**aduste** adj. Արևակեզ, արևից սևացած:

**advenir** v. intr. (14): Պատահել:

– v. imp. Il advint que, այնպես պատահեց, որ. il m'advient de, պատահում է, որ ես. on ne sait ce qu'il en adviendra, հայտնի չէ, թե դեռ ինչ կպատահի. qu'est-il advenu d'elle? նրան ի՞նչ է պատահել. quoi qu'il advienne, ինչ էլ որ պատահի. advienne que pourra, ինչ լինելու է, թող լինի:

**adventice** adj. Կողմնակի, պատահական: // *Բսբ.* Ինքնաբույս, ինքնացան:

**adventiste** adj. *Եկեղ.* Ադվենտիստական:

– s. *Եկեղ.* Ադվենտիստ:

**adverbe** m. *Քրկն.* Մակբայ:

**adverbial, ale** adj. *Քրկն.* Մակբայական:

**adversaire** m. Հակառակորդ, ախոյան։

**adversatif, ive** adj. *Քրկն.* Ներհակական, հակադրական։

**adverse** adj. Հակադիր, հակառակ, ընդդիմական. fortune adverse, անհաջողություն։

**adversité** f. Չարաբախտություն, դժբախտություն։

**adynamie** f. *Բժշկ.* Անուժություն։

**aède** m. Հին հունական երգիչ՝ բանաստեղծ։

**aérage** m. *Տեխ.* Օդափոխություն (հանքախորշում)։

**aérateur** m. Օդափոխիչ։

**aération** f. Օդափոխություն, օդափոխում։ // Գազավորում, գազով հագեցնելը (de l'eau)։

**aéré, ée** adj. Օդափոխված, հովասուն, օդավետ (pièce). centre aéré, բացօթյա կենտրոն։ // *Տեխ.* Օդափչված (béton)։

**aérer** v. tr. (5)։ Օդափոխել։ // Գազավորել, գազով հագեցնել (l'eau)։

**aérien, ienne** adj. Մթնոլորտային (phénomène)։ // Օդային. câble aérien, օդալար. échelle aérienne, օդասանդուղք։ // *Երկթղ.* Վերերկրյա (métro)։ // *Օդգ.* Օդային, ավիացիոն (arme, espace, flotte, ligne, poste)։ // *Փխբ.* Օդային, օդեղեն, թեթև (allure, marche)։

**aérifère** adj. Օդաբեր։

**aérifier** v. tr. (1)։ Գազացնել։

**aérium** [aeʀjɔm] m. *Բժշկ.* Օդաբուժարան։

**aérobie** m. Օդակյաց, աերոբ։

**aérocartographie** f. *Օդգ.* Օդաքարտեզագրում, օդային քարտեզագրում։

**aérochimique** adj. *Ռազմ.* Աերոքիմիական, ավիաքիմիական։

**aéro-club** [aeʀɔklœb] m. *Օդգ.* Ավիասիրողների ակումբ։

**aérodrome** m. *Օդգ.* Աերոդրոմ, օդանավակայան։

**aérodynamique** adj. Օդամեխանիկական, աերոդինամիկական։ // *Ավտ.* Մոտորավորված, մեքենայացված։
– f. Աերոդինամիկա։

**aérodyne** m. *Օդգ.* Թռչող սարք։

**aérofrein** m. Օդային արգելակ։

**aérogare** f. Օդակայարան։

**aéroglisseur** m. *Տեխ.* Օդասահնակ։

**aérolithe** m. *Աստղ.* Երկնաքար, օդաքար, մետեորիտ, աերոլիթ։

**aérologie** f. *Օդգ.* Օդագիտություն, օդաբանություն։

**aéromaritime** adj. Օդային և ծովային։

**aéromètre** m. Օդաչափ։

**aéromodélisme** m. *Օդգ.* Ավիամոդելիզմ։

**aéromoteur** m. Հողմաշարժիչ։

**aéronaute** s. *Օդգ.* Օդագնաց, օդանավորդ։

**aéronautique** adj. Օդանավորդական։
– f. *Օդգ.* Օդագնացություն. aéronautique navale, ռազմածովային ավիացիա։

**aéronaval, ale** adj. *Օդգ.* Օդային և ծովային. forces aéronautiques, ռազմածովային ուժեր։

**aéronavale** f. *Օդգ.* Ռազմածովային ավիացիա։

**aéronef** m. *Օդգ.* Օդանավ։

**aérophagie** f. *Բժշկ.* Օդակլանում։

**aérophare** m. Օդափարոս, օդանավափարոս։

**aérophotographie** f. Օդալուսանկարում։

**aéroplane** m. *Օդգ.* Աերոպլան, սավառնակ։

**aéroport** m. *Օդգ.* Օդանավակայան։

**aéroportable** adj. *Օդգ.* Օդով տեղափոխվող։

**aéroporté, ée** adj. *Օդգ.* Ավիադեսանտային։

**aéropostal, ale** adj. Ավիափոստային։

**aéroroute** f. Օդային ճանապարհ։

**aérosol** [aeʀɔsɔl] m. Աերոզոլ։

**aérospatial, ale** adj. Օդատիեզերական։

**aérostat** m. *Օդգ.* Օդապարիկ, աերոստատ (տե՛ս Ballon)։

**aérostation** f. Օդագնացություն. aérostation d'observation, դիտողական օդագնացություն։

**aérostatique** adj. Օդագնացական։
– f. Օդագնացություն։

**aérostier** m. *Օդգ.* Օդագնաց. corps d'aérostiers militaires, ռազմական օդագնացների զորամաս։

**aérotechnique** f. Ավիատեխնիկա։

**aérotrain** m. *Երկթղ.* Օդագնացք։

**A.F.B.** [aɛfbe] f. *Հպվ.* Association française des banques, Բանկերի ֆրանսիական ասոցիացիա, ԲՖԱ։

**affabilité** f. Սիրալիրություն։

**affable** adj. Սիրալիր, բարեհամբույր (տե՛ս Aimable)։

**affabulation** f. Ֆաբուլա, սյուժե, համառոտ բովանդակություն։ // Հորինվածք, սուտ պատմություն։

**affabuler** v. intr (1)։ Գործողությունը զարգացնել (վեպի), հորինել։

**affadir** v. intr. (2)։ Անհամացնել։ // *Փխբ.* Անհետաքրքիր՝ ձանձրալի դարձնել։
– v. pr. **S'affadir,** անհամանալ, անհետաքրքիր՝ ձանձրալի դառնալ։

**affadissant, ante** adj. Անհամացնող։

**affadissement** m. Անհամացում։ // *Փխբ.* Հետքրքրությունը՝ սրությունը կորցնելը։

**affaiblir** v. tr. (2)։ Թուլացնել, տկարացնել։ // Բացել, մեղմացնել (une couleur). թուլացնել,







պակասեցնել (la lumière)։ // *Ֆին.* Արժեքն իջեցնել, թուլացնել (la monnaie)։ // *Բժշկ.* Ուժազրկել, ուժաբեկել, ուժաթափել (un malade). թուլացնել, վատթարացնել (la santé)։ // *Տեխ.* Ռանդելով հարթել՝ հավասարեցնել (une planche)։ // *Փխբ.* Թուլացնել, պակասեցնել (l'ardeur). թուլացնել (un sentiment)։
– v. pr. **S'affaiblir,** թուլանալ։ // *Փխբ.* Թուլանալ, տկարանալ (facultés)։

**affaiblissement** m. Թուլացում, տկարացում (des forces)։ // *Ֆին.* Արժեքի իջեցում (de la monnaie)։ // *Բժշկ.* Ուժազրկում, թուլություն, տկարություն։ // *Փխբ.* Նվազում, թուլացում։

**affaire** f. Գործ, հարց, խնդիր. affaire de cœur, սիրային պատմություն. affaire d'honneur, մենամարտ. affaire de goût, ճաշակի հարց. avoir affaire à, մեկի հետ գործ ունենալ. avoir affaire avec, մեկի հետ գործ անել. être à son affaire, իր տարերքի մեջ լինել, իր գործով տարված լինել. ce n'est pas une affaire, մեծ բան չէ, դատարկ բան է. ce n'est pas une petite affaire, քիչ բան չէ. c'est une autre affaire, դա ուրիշ բան է. ça ne fait pas l'affaire, այդպես չի լինի. connaître son affaire, իր գործն իմանալ. en faire son affaire, հանձն առնել. faire l'affaire de, մեկին ձեռք տալ՝ հարմար լինել. faire son affaire à, դաս տալ. ne pas être à son affaire, իրեն բարձրության վրա չզգալ, գործից գլուխ չհանել. se tirer d'affaire, ծանր վիճակից դուրս գալ. tirer d'affaire, նեղ վիճակից հանել։ // Pl. Պետական գործեր (affaires publiques). l'expérience des affaires, ղեկավար աշխատանքի փորձառություն. Affaires étrangères, Արտաքին գործեր. Ministère des Affaires étrangères, Արտաքին գործերի նախարարություն։ // Pl. Գործեր (անձնական). occupez-vous de vos affaires, ձեր գործերով զբաղվեք. personne qui s'occupe des affaires d'autrui. ուրիշի գործերին խառնվող անձ. raconter ses affaires, սիրտը բացել։ // Pl. Անձնական իրեր. serrer ses affaires, հավաքել ունեցած-չունեցածը։ // *Իրավբ.* Դատական գործ, դատավարություն. affaire civile, քաղաքացիական դատավարություն։ // *Ռազմ.* Ընդհարում, մարտ։ // *Առևտր.* Ֆիրմա, ձեռնարկություն. գործարք. սպեկուլյացիա. une bonne affaire, ձեռնտու գործարք. faire une mauvaise affaire, անշահավետ գործարքի գնալ, տուժել. régler une affaire, գործ կարգավորել. traiter une affaire avec, մեկի հետ գործարքի մեջ մտնել։ // *Իրավբ.* Homme d'affaires, օրենսգետ։ // *Առևտր.* Բիզնես, գործարարություն, առևտրատնտեսական գործունեություն. dans les affaires, բիզնեսի մեջ. brasseur d'affaires, մեծ բիզնեսմեն՝ գործարար. cabinet d'affaires, գործերի վարման գրասենյակ. homme d'affaires, գործարար մարդ, բիզնեսմեն. faire des affaires, բիզնեսով՝ գործարարությամբ զբաղվել. faire de bonnes affaires, գործերը լավ գնալ, մեծ շահույթներ ստանալ. faire de mauvaises affaires, գործերը վատ գնալ, վնասով դուրս գալ. parler d'affaires, գործերից խոսել։

**affairé, ée** adj. Խիստ զբաղված, բազմազբաղ. իրար անցած, դեսուդեն ընկած, աճապարող։

**affairement** m. Իրարանցում, վազվզուք։

**affairer (s')** v. pr. (1)։ Իրար անցնել, դեսուդեն ընկնել, աճապարել։

**affairisme** m. Գործամոլություն, վաճառականի ոգի, հաշվենկատություն։

**affairiste** s. Շահախնդրախ՝ խորամանկ՝ ոչ ազնիվ գործարքներ վարող մարդ, աֆերիստ։

**affaissement** m. Ծռվելը (d'une poutre). նստելը, իջնելը, փլուզվածք (du terrain). փլում, փլչելը, փուլ գալը (du toit)։ // *Ֆին.* Իջնելը, ընկնելը (des prix)։ // *Բժշկ.* Ուժասպառություն, հյուծում, ուժերի անկում (d'un malade). թուլացածություն (des muscles). ընկճվածություն, դեպրեսիա (des nerfs)։

**affaisser** v. tr. (1)։ Իջեցնել, կախ գցել, թեքել. փլուզել, նստեցնել։ // *Փխբ.* Ընկճել, հուսահատեցնել։
– v. pr. **S'affaisser,** իջնել, թեքվել, կախվել. նստել, իջնել. ընկղմվել, ընկնել (dans)։ // *Բժշկ.* Ուժասպառ լինել, թուլանալ (malade), վատանալ (santé)։

**affaler** v. tr. (1)։ *Ծով.* Իջեցնել։
– v. pr. **S'affaler,** ցած սահել։ // *Խսկց.* Ընկնել, ընկղմվել։

**affamé, ée** adj. Սովյալ, սոված, քաղցած։ // *Փխբ.* Փափագող, ձգտող, տենչացող, ծարավի։

**affamer** v. tr. (1)։ Սովահար անել։

**affameur** s. Սովահար անող։

**affect** [afɛkt] m. *Հոգբ.* Հուզական վիճակ, աֆեկտ։

**affectable** adj. Զգայունակ, դյուրազգաց։

**affectation** f. Շինծություն, կեղծություն, անբնականություն, արհեստականություն։ // Չևացնելը, կեղծելը, կոտրատվելը, սեթևեթելը։ // Նշանակում (à un poste). հատկացում (à un usage)։ // *Առևտր.* Հատկացում (de crédits)։ // *Իրավբ.* Affectation hypothécaire, կայքերի գրավադրման՝ կայքադրության որոշում։ // *Ռազմ.* Affectation spéciale, պահեստային զինծառայողի նշանակում քաղաքացիական պաշտոնի։

**affecté, ée** adj. Ազդված, հուզված. կեղծ, շինծու. չափազանցված։ // Անբնական, արհեստական, թատերական (տե՛ս Maniéré)։

– m. *Ռազմ.* Affecté spécial, քաղաքացիական պաշտոնի նշանակված պահեստային զինծառայող:

**affecter** v. tr. (1): Ազդել, հուզել, խոցել, վշտացնել (տե՛ս Émouvoir). ազդել, ներգործել, ազդեցություն թողնել: // Ձևացնել, կեղծել, խաղալ (տե՛ս Feindre): // Ախտահարել, հիվանդացնել, վնասել: // Ստանձնել, հանձն առնել: // Նշանակել, հատկացնել (à): // *Առևտր.* Հատկացնել (des crédits): // *Իրավբ.* Կիրառել. affecté d'hypothèque, կալքադրության՝ անշարժ գույքի գրավադրման ենթակա: // *Ռազմ.* Նշանակել, ընտրել, գործուղել, ուղարկել:

– v. pr, **S'affecter,** վշտանալ, ազդվել, հուզվել:

**affectif, ive** adj. Հուզական, զգայական, զգացմունքային:

**affection** f. Սեր, գութ, գորով, կապվածություն (տե՛ս Attachement, Tendresse). prendre en affection, se prendre d'affection pour, կապվել, սիրել, քնքուշ զգացմունքներ տածել: // *Բժշկ.* Հիվանդություն:

**affectionné, ée** adj. Սիրող:

**affectionner** v. tr. (1): Սիրել, քնքուշ զգացմունքներ տածել, կապված լինել:

**affectivité** f. *Հոգբ.* Հուզականություն:

**affectueusement** adv. Սիրով, գորովանքով, քնքշությամբ:

**affectueux, euse** adj. Սիրող, գորովալից, գորովագին, քնքուշ զգացմունքներ տածող (տե՛ս Aimant):

**afférent, ente** adj. Վերաբերող, պատկանող, հասնող (à). portion afférente à, մեկին հասնող բաժին: // *Բժշկ.* Կենտրոնաձիգ:

**affermable** adj. Վարձակալական, վարձակալային:

**affermage** m. Վարձակալություն:

**affermer** v. tr. (1): Վարձակալությամբ տալ, վարձակալությամբ վերցնել:

**affermir** v. tr. (2): Պնդացնել. ամրացնել. կայունացնել: // *Փխբ.* Կայունացնել, հաստատուն դարձնել:

– v. pr. **S'affermir,** պնդանալ, ամրանալ: // Հաստատվել, ամրապնդվել:

**affermissement** m. Ամրացում, պնդացում, կայունացում (տե՛ս Consolidation):

**affété, ée** adj. Տե՛ս Affecté:

**afféterie** f. Տե՛ս Affectation:

**affichage** m. Ազդագիր փակցնելը. tableau d'affichage, հայտարարությունների տախտակ: // *Փխբ.* Հրապարակում, հռչակում (de ses idées), ի ցույց դնելը:

**affiche** f. Ազդագիր, ազդաթերթ, աֆիշ (illustrée). annoncer par voie d'affiches, ազդարարել, ազդագրերի միջոցով գովազդել. colleur d'affiches, ազդագրեր փակցնող. poser une affiche, ազդագիր փակցնել: // *Թատր.* Աֆիշ, ազդ. tenir l'affiche, բեմից չիջնել:

**afficher** v. tr. (1): Փակցնել, կպցնել (une affiche). défense d'afficher, ազդագիր փակցնելն արգելվում է: // *Թատր.* Ներկայացման ծրագիրը փակցնել: // *Փխբ.* Ցուցադրել, ի ցույց դնել:

– v. pr. **S'afficher,** իրեն ցույց տալ, ուշադրություն գրավել: // Ամենուր հայտնվել (avec):

**affichette** f. Թռուցիկ:

**afficheur** m. Ազդագրեր փակցնող:

**affichiste** s. Պլակատիստ:

**affidé** m. Հանցակից, դավակից:

**affilage** m. Սրում, սրելը (d'une faux, d'une lame, d'une scie):

**affilé, ée** adj. Սուր (lame, langue):

**affilée (d')** loc. adv. Անընդմեջ, շարունակաբար:

**affiler** v. tr. (1): Սրել: // Բարակեցնել, նրբաթիթեղ դարձնել (l'argent, l'or):

**affileur** m. Սրիչ, սրող:

**affiliation** f. Կցորդություն, միացում: // Անդամագրում:

**affilié, ée** adj. Ընդունված, կցված, անդամագրված (à un parti, à une organisation):

– s. Անդամակից:

**affilier** v. tr. (1): Կցել, միացնել (à):

– v. pr. **S'affilier**, կցվել, անդամակցվել (à):

**affilloir** m. Սրոցաքար: // Սրոցափոկ:

**affinage** m. Սրում, սրելը (d'une aiguille). բարակացում (d'une planche). մաքրում, զտում (de l'or): // *Խհրր.* Հասունացում (du fromage):

**affinement** m. Նրբացում, սրացում (de l'esprit). հղկում (des manières): // *Տեխ.* Affinement aérodynamique, աերոդինամիկական զտում:

**affiner** v. tr. (1): *Տեխ.* Զտել (l'acier, l'or). սրել (les aiguilles, les clous). բարակացնել (le bois). մաղել (le ciment). գզել (le chanvre). փայլարդել (le papier): // *Փխբ.* Նրբացնել, հղկել:

– v. pr. **S'affiner,** *Խհրր.* Հասունանալ, խմորվել (fromage, vin): // *Փխբ.* Նրբանալ (goût). հղկվել (manières):

**affineur** m. *Տեխ.* Զտիչ:

**affinité** f. Ազգակցություն, խնամ(ի)ություն: // *Քիմ.* Հարամերձություն: // *Փխբ.* Նմանություն, ընդհանրություն (des choses). ընդհանրություն, ծգողություն, համակրանք (des personnes):

**affirmatif, ive** adj. Հաստատական. signe affirmatif, համաձայնության նշան: // Հաստատամիտ (personnes):

– f. Դրական պատասխան:





**affirmation** f. Հաստատում, հավաստում: // *Իրավբ.* Affirmation sous serment, երդմամբ հաստատված ցուցմունք:

**affirmativement** adv. Դրականորեն, դրականապես:

**affirmer** v. tr. (1): Հաստատել, հավաստել: // Պնդել: // Հաստատել, թելադրել (son autorité):

– v. pr. **S'affirmer,** հաստատվել, հանդես գալ (comme): // *Խսկց.* Ի հայտ գալ (défaut, qualité):

**affixe** adj. Հավելված:

– m. *Քրկն.* Ածանց:

**affleurement** m. Հավասարեցում, հարթեցում: // *Երկրբ.* Մակերես դուրս գալը: // *Փիլ.* Բացահայտում:

**affleurer** v.tr. (1): Հավասարեցնել, հարթեցնել: // Նույն մակարդակին հասցնել, հավասարեցնել (les bords):

– v. intr. Նույն մակարդակի հասնել, հավասարվել: // *Երկրբ.* Մակերես դուրս գալ:

**afflictif, ive** adj. *Իրավբ.* Մարմնատանջ, խոշտանգիչ. peine afflictive, մարմնական՝ ֆիզիկական պատիժ:

**affliction** f. Վիշտ, տխրություն, տրտմություն:

**affligé, ée** adj. Վշտացած (par): // *Փխբ.* Ախտահարված, հիվանդ (de):

**affligeant, ante** adj. Վշտալի, ցավալի (nouvelle). վշտալի, ողբալի (état):

**affliger** v. tr. (1): Վշտացնել, ցավ պատճառել, տխրեցնել (տե՛ս Attrister): // Համակել, հարվածել:

– v. pr. **S'affliger,** վշտանալ, ցավել, տխրել:

**afflouer** v. tr. (1): *Ծով.* Ծանծաղուտից հանել:

**affluence** f. Խուռնընթաց ամբոխ, միախուռն ընթացք. heures d'affluence, մարդկանց երթևեկության ուժեղացման պահեր, երթևեկության լարվածապահ: // Առատություն (տե՛ս Abondance): // Հորդություն, հորդահոսանք (d'eau):

**affluent, ente** adj. *Աշխգր.* Լցվող, թափվող, վտակային: // *Բժշկ.* Հոսող:

– m. *Աշխգր.* Վտակ: // *Տեխ.* Սնուցող մեխանիզմ:

**affluer** v. intr. (1): Ներհոսել, առհոսել (eau). հորդել, լցվել (personnes):

**afflux** m. Տե՛ս Affluence: // *Բժշկ.* Ներհոսում, արյունազեղում, արյունակալում:

**affolant, ante** adj. Խելագարության հասցնող, խելագարեցնող, տագնապալի:

**affolé, ée** adj. Խելակորույս, տագնապահար, խուճապահար: // *Տեխ.* Պտտվող, տատանվող (boussole). խիստ արագ պտտվող (machine):

**affolement** m. Խելակորուսություն, խելակորույս՝ տագնապահար վիճակ: // *Տեխ.* Սլաքի խիստ տատանումներ (de la boussole). խիստ արագ պտտվելը (d'un moteur):

**affoler** v. tr. (1): Խենթացնել (d'amour). տագնապահարել, խուճապի մատնել (de peur, de soucis): // *Տեխ.* Սլաքի խիստ տատանումներ առաջացնել (la boussole). խիստ արագ պտտեցնել (un moteur). boussole affolée, անսարք՝ վնասված կողմնացույց:

– v. pr. **S'affoler,** տագնապահարվել, խուճապի մատնվել, գլուխը կորցնել. խուճապահար փախչել: // *Տեխ.* Պտտվել, խիստ տատանվել (boussole). սկսել խիստ արագ պտտվել (moteur):

**afforestation** f. Անտառապատում:

**affouillement** m. *Աշխգր.* Տակից ողողելով քանդելը՝ վնասելը:

**affouiller** v. tr. (1): Տակից ողողելով քանդել՝ վնասել:

**affourager** v. tr. (7): *Գտնտ.* Կեր տալ:

**affourche** f. *Ծով.* Երկակի խարիսխ:

**affourcher** v. tr. (1): Երկակի խարիսխ գցել:

**affranchie, ie** adj. Ազատ, ազատ արձակված (esclave): // Վճարված, նամականիշ փակցված (lettre): // *Փխբ.* Ազատված, ազատ (de): // *Ժղ.* Տեղյակ:

– m. Ազատ արձակված ստրուկ:

**affranchie** f. Ազատ արձակված ստրկուհի:

**affranchir** v. tr. (2): Ազատել, ազատ արձակել (un esclave): // Նամականիշ փակցնել, վճարել (un envoi, une lettre): // Խաղը վերջացնել (թղթախաղում): // *Ֆին.* Ազատել (de) [impôts]: // *Տեխ.* Չորացնել (un tonneau): // *Փխբ.* Ազատագրել, ազատել (l'esprit): // *Ժղ.* Տեղեկացնել, տեղյակ դարձնել, լուսավորել:

– v. pr. **S'affranchir**, ազատվել, ազատագրվել. s'affranchir de, փրկվել, պրծնել, գլուխն ազատել:

**affranchissement** Ստրուկի ազատ արձակում: // Ազատագրություն, ազատագրում: // Փոստային առաքման համար վճարելը (d'un colis). նամականիշ փակցնելը (d'une lettre): // *Ֆին.* Հարկից ազատելը, ապահարկում (d'un impôt): // *Փխբ.* Ազատագրում (de l'esprit):

**affres** f. pl. Տառապանք:

**affrètement** m. *Ծով.*, *Օդգ.* Նավավարձություն, նավի՝ ինքնաթիռի վարձում:

**affréter** v. tr. (5): *Ծով.*, *Օդգ.* Նավ՝ ինքնաթիռ վարձել, փոխադրավարձել:

**affréteur** m. *Ծով.*, *Օդգ.* Նավ՝ ինքնաթիռ վարձող, փոխադրավարձորդ:

**affreusement** adv. Սարսափելի, ահավոր, սոսկալի. չափազանց, չափից դուրս, սաստիկ:

**affreux, euse** adj. Այլանդակ, անճոռնի. սարսափելի, զարհուրելի, սոսկալի (տե՛ս Horrible): // Զզվելի, նողկալի: // *Խսկց.* Անտանելի, զզվելի (temps):

**affriander** v. tr. (1): Հրապուրել, գրավել, գայթակղել:

**affriolant, ante** adj. Ախորժելի, հրապուրիչ, գրավիչ: // *Փխբ.* Հրապուրիչ, գայթակղիչ:

**affrioler** v. tr. (1): Հրապուրել, գայթակղել, գրավել:

**affriqué, ée** adj., f. *Քրկն.* Պայթաշփական, աֆրիկատ:

**affront** m. Վիրավորանք, անարգանք. faire un affront à, անարգել, խայտառակել:

**affrontement** m. Դիմակայություն, դիմակայում, առճակատում:

**affronter** v. tr. (1): Դիմակայել, դիմագրավել, առճակատել: // *Տեխ.* Երեսը երեսին (կամ) եզրը եզրին միացնել: // *Փխբ.* Դիմակայել, դիմագրավել:
– v. pr. **S'affronter,** դեմ հանդիման՝ ճակատ առ ճակատ դուրս գալ, հակադրվել:

**affublement** m. Պճնազեղ հանդերձանք:

**affubler** v. tr. (1): Պճնել, պճնազարդել (de) [տե՛ս Accoutrer]:
– v. pr. **S'affubler,** պճնվել՝ պճնազարդվել արտառոց՝ ծիծաղելի ձևով (de): // *Փխբ.* S'affubler de, ընդունել, վերցնել (un faux nom):

**affusion** f. *Բժշկ.* Ջրացանություն, վրան ջուր շաղելը:

**affût** m. *Ռազմ.* Լաֆետ, հրետասայլ. affût de canon, հաստոց. հրանոթի՝ գնդացրի հենարան՝ պատվանդան: // *Մարզ.* Թաքստոց, պատսպարան. chasser à l'affût, որս անել դարանակալելով: // *Փխբ.* Etre à l'affût de, դարանակալել, պատեհ պահի սպասել:

**affûtage** m. Սրում: // *Ռազմ.* Տեղավորում լաֆետի վրա, լաֆետային տեղակայում:

**affûter** v. tr. (1): Սրել (տե՛ս Affiler):

**affûteur** m. Սրիչ, սրող (d'outils): // Դարանակալ որսորդ:

**affûteuse** f. Սրող մեքենա:

**affûtiau** m. *Խսկց.* Մանր անարժեք իր. էժանագին զարդ:

**afghan, ane** adj. Աֆղանական:
– s. Աֆղան, աֆղանուհի:
– m. Աֆղաներեն:

**Afghanistan** m. *Աշխգր.* Աֆղանստան:

**afin de** loc. prép. Նպատակով, որպեսզի:

**afin que** loc. conj. Որպեսզի, որ:

**afortiori** adv. Առավել ևս:

**A.F.P.** [aεfpe] f. *Հպվ.* Agence France-Presse, Ֆրանս-պրես գործակալություն:

**africain, aine** adj. Աֆրիկյան, աֆրիկական:
– s. Աֆրիկացի:

**africanisation** f. Աֆրիկանացում:

**africaniste** s. Աֆրիկագետ:

**africaans** [afʀikɑ̃s] m. Աֆրիկաներեն:

**Afrique** f. *Աշխգր.* Աֆրիկա: // **Afrique du Sud,** f. *Աշխգր.* Հարավային Աֆրիկա:

**afro-** préf. Աֆրիկա- // **Afro-américain, aine,** adj. Աֆրիկա-ամերիկյան: // **Afro-asiatique,** adj. Աֆրիկա-ասիական:

**after-shave** [aftœʀʃεv] m. Սափրվելուց հետո գործածվող հեղուկ:

**agaçant, ante** adj. Նյարդայնացնող, ջղայնացնող: // Հրապուրիչ, գրգռիչ, գայթակղիչ (sourire):

**agacement** m. Նյարդայնություն (տե՛ս Impatience). agacement des dents, ատամներն առնելը, ատամնառություն. agacement des nerfs, ջղագրգռություն:

**agacer** v. tr. (5): Ջղայնացնել, նյարդայնացնել (տե՛ս Énerver). agacer les dents, ատամներն առնել. agacer les nerfs de qqn, մեկի ջղերի վրա ազդել. sa voix m'agace, նրա ձայնը վրաս ազդում է: // Չարացնել, գրգռել (un chien). գրգռել, բորբոքել (qqn):
– v. pr. **S'agacer,** նյարդայնանալ, գրգռվել (տե՛ս Énerver [s']):

**agaceries** f. pl. Պչրանք, սեթևեթանք: // Չարացնելը, ջղայնացնելը, գրգռելը:

**agame** adj. *Բսբ.*, *Կենդբ.* Անսեռ (reproduction):

**agape** f. *Եկեղ.* Ագապ: // Pl. *Խսկց.* Ճաշկերույթ, խնջույք:

**agar-agar** m. Ագար, ագար-ագար:

**agate** f. *Հնք.* Ագատ. ագատե իր:

**agave** m. *Բսբ.* Ագավի:

**âge** m. Տարիք. âge légal, չափահասություն. âge de raison, գիտակից տարիք. avant l'âge, տարիքից շուտ. bas âge, վաղ մանկություն. d'un certain âge, տարիքն առած. entre deux âges, միջին տարիքի. dans la force de l'âge, ուժերի ծաղկման շրջանում. il ne paraît pas son âge, նա իր տարիքից ավելի երիտասարդ է երևում. premier âge, մանկություն. quand j'avais son âge, երբ ես նրա տարիքին էի. quel âge avez-vous, քանի՞ տարեկան եք: // Դար, դարաշրջան. d'un autre âge, այլ ժամանակների. âge du bronze, du fer, de pierre, de la pierre polie, բրոնզե, երկաթե, քարե, նոր քարե դար. âge d'or, ոսկեդար. Moyen âge, միջնադար:

**âgé, ée** adj. Տարիքն առած, տարիքով, ծեր (տե՛ս Vieux). âgé de trente ans, երեսնամյա. il est âgé de trente ans, նա երեսուն տարեկան է. le plus







âgé des deux, երկուսից ամենամեծը. plus âgé que, ավելի մեծ, քան:

**agence** f. Գործակալություն, բյուրո. հիմնարկ, կազմակերպություն. ֆիլիալ, մասնաճյուղ, գրասենյակ: // *Ծով.* Agence maritime, ծովային գործակալություն:

**agencement** m. Դասավորություն, կարգավորություն: // Կահավորում (d'une maison): // Շարադասություն, կառուցվածք (d'une phrase): // Pl. Պիտույքակազմ (d'une maison, d'un magasin):

**agencer** v. tr. (6): Դասավորել, տեղադրել, կարգավորել: // Սարքավորել, կահավորել (un local): // *Արվ.* Ներդաշնակել (des couleurs): // *Քրկն.* Կառուցել, կազմել (une phrase): // *Տեխ.* Սարքավորել (une mécanique):

**agenda** [agε̃da] m. Հուշատետր, ծոցատետր, օրատետր:

**agenouillé, ée** adj. Ծնկաչոք, ծնկի եկած:

**agenouillement** m. Ծնրադրում, ծնրադրություն:

**agenouiller** v. tr (1): Ծնկի բերել:
– v. pr. **S'agenouiller,** ծնկի գալ, չոքել, ծնրադրել:

**agenouilloir** m. Ծնկակալ:

**agent** m. Գործակալ, ներկայացուցիչ. agent d'affaires, մակլեր, միջնորդ. agent d'assurances, ապահովագրական գործակալ. agent de change, բորսային միջնորդ, բորսային մակլեր. agent comptable, հաշվապահ. agent diplomatique, դիվանագիտական ներկայացուցիչ. agent électoral, ձայներ հաշվող (ընտրությունների ժամանակ). agent de liaison, միջնորդ, գործակալ. agent de location, վարձակալման գործակալ. agent de police, ոստիկան. agent provocateur, պրովոկատոր. agent secret, գաղտնի գործակալ: // Գործոն, ազդակ. agent chimique mortel, քիմիական մահաբեր ազդակ: // Agent voyer, ճանապարհային ինժեներ:

**agglomérant** m. Կապող՝ կապակցող նյութ:

**agglomérat** m. Ագլոմերատ, խառնակույտ:

**agglomération** f. Կուտակում, կիտում, ագլոմերացում: // Խումբ (d'arbres, d'îles, de maisons). գունդ, կտոր (de charbon). կույտ (de neige). ամբոխ, բազմություն. բնակելի զանգված, բնակավայր:

**aggloméré, ée** adj. Կուտակված, կիտված:
– m. *Երկրբ.* Ագլոմերատ, կոնգլոմերատ: // *Առևտր.* Մամլած վառելանյութի կտոր, բրիկետ (ածխի): // *Ճրտրպ.* Պանել:

**agglomérer** v. tr. (5): Կուտակել, կիտել, ագլոմերացնել:
– v. pr. **S'agglomérer,** կուտակվել, կիտվել, խմբվել: // Մամլվել (charbon):

**agglutinant, ante** adj. Կպցնող: // *Քրկն.* Կցական (langue):
– m. Կպցնող՝ կապող՝ միացնող նյութ՝ միջոց: // Լուծիչ, լուծող (ներկերի): // Ամրան (պանելների):

**agglutination** f. Միացում, կցում, կպցնելը, մածլելը:

**agglutiner** v. tr. (1): Կպցնել, կցել, միակցել:
– v. pr. **S'agglutiner,** կպչել, շաղախվել, միակցվել, մածլվել: // *Փխբ.* Կուտակվել, իրար գլխի հավաքվել, խմբվել:

**agglutinine** f. *Բժշկ.* Կպցնող նյութ, ագլյուտինին:

**agglutinogène** adj. *Բժշկ.* Ագլյուտինոգեն:

**aggravant, ante** adj. Ծանրացնող, վատթարացնող:

**aggravation** f. Ծանրացում, վատթարացում, լրջացում: // *Իրավբ.* Ծանրացում (de la peine):

**aggraver** v. tr. (1): Ծանրացնել, սրել, խորացնել, վատթարացնել: // Ավելացնել:
– v. pr. **S'aggraver,** ծանրանալ, սրվել, խորանալ, վատթարանալ:

**agile** adj. Ճարպիկ, ճկուն, արագաշարժ, դյուրաշարժ, թեթևանդամ: // *Փխբ.* Հնարամիտ, խելամիտ, ճարտարամիտ, ուշիմ:

**agilement** adv. Ճարպկորեն, աշխուժորեն:

**agilité** f. Ճարպկություն, ճկունություն, թեթևություն, արագաշարժություն: // Հնարամտություն, խելամտություն, ուշիմություն:

**agio** m. *Ֆին.* Հավելավճար (ոսկեդրամի, արժեթղթի, տարադրամի):

**agiotage** m. *Ֆին.* Բորսայական չարաշահում, բորսայախաղ:

**agioter** v. intr. (1): *Ֆին.* Բորսայական արժեթղթերի չարաշահությամբ զբաղվել, բորսայում սպեկուլյացիա անել:

**agir** v. intr. (2): Գործել. faire agir, աշխատեցնել, ստիպել գործել: // Վարվել (envers). agir loyalement, ազնվորեն վարվել. bien, mal agir, լավ, վատ վարվել. façon d'agir, վարվելակերպ, պահվածք: // *Բժշկ.* Ներգործել, ազդել (remède). agir sur, վրան ազդել: // *Իրավբ.* Agir contre, գործ հարուցել. faire agir la loi, օրենքի ուժին դիմել: // *Ֆին.* Agir sur le marché, գներն արհեստականորեն բարձրացնել կամ իջեցնել:
– v. impers. De quoi s'agit-il ?, ի՞նչ է պատահել, խոսքն ինչի՞ մասին է. il s'agit de Jean, Ժանի մասին է խոսքը, դա Ժանին է վերաբերում. il ne s'agit pas de ça, խոսքն այդ մասին չէ, հարցը դա չէ. il s'agit de son avenir, նրա ապագայի հարցն է. il s'agit de savoir si, մնում է իմանալ, թե. il ne

s'agit que de moi, դա միայն ինձ է վերաբերում. il s'agit de travailler, պետք է միայն աշխատել. voici ce dont il s'agit, ահա թե բանն ինչ է:

**agissant, ante** adj. Գործունյա, ակտիվ, ազդող, ներգործող:

**agissements** m. pl. Արարքներ, գործեր:

**agitant, ante** adj. Հուզող, գրգռող, գրգռիչ, խթանող, խթանիչ:

**agitateur, trice** s. Խռովարար, խառնակիչ, սադրիչ:
– m. *Քիմ.* Խառնիչ:

**agitation** f. Ալեկոծում, անհանգստություն, իրարանցում: // Հուզում, անհանգստություն, խմորում, խռովություն: // *Բժշկ.* Ցնցում, ջղաձգություն: // *Փխբ.* Անհանգստություն, հուզում, խռովք, գրգռվածություն:

**agité, ée** adj. Ալեկոծված, անհանգիստ, գրգռված, խռովահույզ, փոթորկալից: // *Բժշկ.* Խանգարված (esprit). անզուսպ, կատաղի (malade):
– s. Անհանգիստ անձնավորություն:

**agiter** v. tr. (1): Թափահարել, շարժել, խառնել: // Խռովել, հուզել, գրգռել (une foule). ալեկոծել, խռովել (la mer): // *Բժշկ.* Գրգռել (un malade): // *Փխբ.* Գրգռել, անհանգստացնել, խռովել (l'esprit). քննարկել (un projet, une question):
– v. pr. **S'agiter,** իրար անցնել, դեսուդեն ընկնել. անհանգիստ շուռումուռ գալ (dans son sommeil): // Խմորվել, գրգռվել (pensées, population): // Ալեկոծվել (mer):

**agneau** m. *Կենդբ.* Գառ:

**agnelage** m. Գառան ծին, գառան ծնի ժամանակը:

**agnelée** f. Ոչխարի բեր:

**agneler** v. intr. (8b): Գառ ծնել:

**agnelet** m. *Կենդբ.* Գառնուկ:

**agneline** f. Գառան բուրդ:

**agnelle** f. *Կենդբ.* էգ գառ, ջահել մաքի:

**agnosticisme** [agnɔstisism] m. Ագնոստիցիզմ:

**agnostique** [agnɔstik] adj. Ագնոստիկական, ագնոստիցիզմին վերաբերող:
– s. Ագնոստիկ:

**agonie** f. Հոգեվարք. entrer en agonie, հոգեվարքը սկսվել. être à l'agonie, հոգեվարքի մեջ լինել: // *Փխբ.* Անձկություն:

**agonir** v. tr. (2): Հայհոյել, անարգել. agonir d'injures, հայհոյանքներ տեղալ:

**agonisant, ante** adj. Հոգեվար, հոգին ավանդող, մեռնող, մահացող:
– s. Մահամերձ:

**agoniser** v. intr. (1): Հոգեվարել, հոգին ավանդել, վերջին շնչում լինել: // *Փխբ.* Քայքայվել, անկման հասնել (empire):

**agoraphobie** f. *Բժշկ.* Տարածավախություն:

**agouti** m. *Կենդբ.* Ամերիկյան ճագար:

**agrafage** m. Ճարմանդելը, ճարմանդ գցելը, կոճկելը. ամրակով միացնելը: // *Ճրտրպ.* Կապելը, ամրացնելը, նեցուկ տալը: // *Տեխ.* Շրջակարում, եզրակարում:

**agrafe** f. Ճարմանդ, կեռ, ամրակ. agrafe et porte, ճարմանդ և օղակ: // *Բժշկ.* Սեղմակ: // *Ռազմ.* Զարկան: // *Տեխ.* Եզրակոս, եզրածալվածք:

**agrafer** v. tr. (1): Ճարմանդել, կեռակցել, ամրակցել: // *Խսկց.* Բռնեցնել, բռնել:
– v. pr. **S'agrafer,** միանալ, կպչել:

**agrafeuse** f. Ամրակիչ:

**agraire** adj. Հողային, հողագործական, ագրարային. mesures agraires, հողային չափումներ:

**agrammatical, ale** adj. Քերականորեն ոչ ճիշտ:

**agrandir** v. tr. (2): Մեծացնել, խոշորացնել, ընդլայնել, ընդարձակել: // Ազնվացնել, վեհացնել (l'âme):
– v. pr. **S'agrandir,** ավելանալ. ընդլայնվել: // *Առևտր.* Գործն ընդլայնել (magasin):

**agradissement** m. Մեծացում, խոշորացում, ընդարձակում, ընդլայնում: // Ուժեղացում (du pouvoir):

**agrandisseur** m. Խոշորացուցիչ (de photo):

**agraphie** f. *Հոգբ.* Ագրաֆիա:

**agrarien, ienne** adj. Ագրարային, հողային:
– s. Հողատեր, հողատիրոջ շահերն արտահայտող կուսակցության անդամ:

**agréable** adj. Հաճելի, դուրեկան (տե՛ս Aimable, plaisant). agréable au goût, à l'odorat, à la vue, հաճելի համով՝ հոտով՝ տեսքով. être agréable à, դուր գալ. pour lui être agréable, նրան դուր գալու՝ սիրտը շահելու համար. se rendre agréable à, հաճոյանալ:
– m. Հաճելին. joindre l'utile à l'agréable, համատեղել հաճելին և օգտակարը:

**agréablement** adj. Հաճելի՝ դուրեկան կերպով:

**agréé, ée** adj. Հաստատված, վավերացված:
– m. *Իրավբ.* Հավատարմատար, իրավաբան. առևտրական ատյանին կից հավատարմատար:

**agréer** v. tr. (1): Ընդունել. agréez mes excuses, ներող եղեք, ներողամիտ եղեք. agréez l'expression de mes sentiments distingués, հաճեցեք ընդունել հարգանացս հավաստիքը:
– v. intr. Agréer à, դուր գալ, հաճելի լինել:

**agrégat** m. *Բսբ.*, *Քիմ.* Ագրեգատ:

**agrégatif, ive** adj. *Քիմ.* Ագրեգատային:





**agrégation** f. Միակցում, միավորում: // Կուտակում, կիտում: // Ընդունում: // Քննությունների շարք, որոնց հաջող հանձնումը լիցեյներում և համալսարանական որոշ ֆակուլտետներում դասավանդելու իրավունք է ընձեռում. այդ քննությունները հաջող հանձնողներին շնորհվող աստիճան:

**agrégé, ée** adj. Միակցված: // *Երկրբ.* Ագրեգատային: // «Agrégation»-ի մրցույթում հաջողության հասած անձ:

**agréger** v. tr. (7): Միակցել, միավորել (à):
– v. pr. **S'agréger,** միակցվել, միավորվել. s'agréger à, միանալ:

**agrément** m. Հավանություն, հաճություն (տե՛ս Acquiescement): // Հմայք, գրավչություն (տե՛ս Charme): Հաճույք, զվարճություն. jardin d'agrément, դեկորատիվ պարտեզ. voyage d'agrément, ճանապարհորդություն սեփական հաճույքի համար: // Pl. Զարդարանք (d'une robe). պաճուճանք (du style): // *Իրավբ.* Համաձայնություն, հավանություն, ագրեման: // *Երժշտ.* Գեղգեղանք, դայլայլ:

**agrémenter** v. tr. (1): Զարդարել, պաճուճել:

**agrès** m. pl. *Ծով.* Նավասարք, նավահանդերձանք: // *Օդգ.* Օդանավասարք, օդանավահանդերձանք: // Մարզական գործիքներ (de gymnastique):

**agresser** v. tr. (1): Հարձակվել. se faire agresser, հարձակման ենթարկվել (dans la rue, dans le métro):

**agresseur** m. Նախահարձակ, ագրեսոր:

**agressif, ive** adj. Ագրեսիվ, հարձակողական, սպառնալից, կռվարար:

**agressivement** adv. Ագրեսիվորեն, հարձակողաբար, սպառնալիորեն:

**agression** f. Հարձակում, ագրեսիա:

**agressivité** f. Հարձակողականություն, ագրեսիվություն, կռվարարություն, ագրեսիվ տրամադրություն:

**agreste** adj. *Գտնտ.* Գյուղական, գեղջկական: // *Խսկց.* Անկիրթ, անտաշ:

**agricole** adj. *Գտնտ.* Հողագործական, գյուղատնտեսական. grande exploitation agricole, մեծ ֆերմա:

**agriculteur, trice** s. *Գտնտ.* Հողագործ, երկրագործ, ֆերմեր:

**agriculture** f. Գյուղատնտեսություն, հողագործություն, երկրագործություն:

**agriffer (s')** v. pr. (1): Ճանկերով կառչել (à):

**agripper** v. tr. (1): Բռնել, ճանկել, հափշտակել:
– v. tr. **S'agripper,** բռնել, կառչել (à):

**agro-alimentaire** adj. Գյուղատնտեսական մթերքների վերամշակման (industries, techniques):

**agrologie** f. *Գտնտ.* Հողագիտություն:

**agronome** s. *Գտնտ.* Գյուղատնտես, ագրոնոմ:

**agronomie** f. *Գտնտ.* Գյուղատնտեսություն, ագրոնոմիա:

**agronomique** adj. Գյուղատնտեսական, ագրոնոմիական:

**agrumes** m. pl. Ցիտրուսազգիներ, սատապազգիներ:

**aguerri, ie** adj. Վարժված, մարզված:

**aguerrir** v. tr. (2): Կոփել, վարժեցնել, մարզել (à):
– v. pr. **S'aguerrir,** վարժվել, մարզվել (à). s 'aguerrir contre, կոփվել:

**aguerrissement** m. Մարզում, կոփում. կոփվածություն:

**aguets** m. pl. Դարան. aux aguets, դարանակալ, ականջը սրած, աչալուրջ, զգոն:

**aguichant, ante** adj. Հրապուրիչ, հմայիչ, սեթևեթ (femme). գայթակղիչ (sourire):

**aguicher** v. tr. (1): *Խսկց.* Հրապուրել, գայթակղել (սեթևեթանքով):

**aguicheuse** f. Պչրասեր՝ սեթևեթ կին:

**ah!** interj. Ա՜հ, ա՜խ, վա՜յ, վա՜խ:

**ahan** m. *Հնց.* Տանջանք, տաժանք, չարչարանք:

**ahaner** v. intr. (1): Փնչացնել, հևալ. չարչարվել, չարքաշ աշխատել, քրտինք թափել:

**ahuri, ie** adj. Շվարած, շշմած, ապշահար, ապշած, ապուշ կտրած:
– s. Ապուշ՝ շշմած՝ տխմար անձնավորություն:

**ahurir** v. tr. (2): Շվարեցնել, շշմեցնել, ապշեցնել, ապշահար անել:

**ahurissant, ante** adj. Շվարեցնող, շշմեցնող, ապշեցնող:

**ahurissement** m. Շվարանք, ապշանք:

**ai** Տե՛ս Avoir:

**aï** m. *Կենդբ.* Համրուկ:

**aiche** f. *Մարզ.* Խայծ:

**A.I.D.** [aide] f. *Հպվ.* Association Internationale de développement, Զարգացման միջազգային ասոցիացիա, ԶՄԱ:

**aide** f. Օգնություն, օժանդակություն. à l'aide de (qqch), avec l'aide de (qqn), օգնությամբ. crier à l'aide, օգնության կանչել. sans aide, անօգնական. venir à l'aide de, օգնության հասնել. venir en aide à, օգնել: // *Ֆին.* Դրամական օգնություն (en argent): // Pl. Ձիասարք: // *Բժշկ.* Aide médicale à domicile, տնային բժշկական հսկողություն:

– s. Օգնական, ասիստենտ (տե՛ս Auxiliaire): // **Aide-comptable,** s. Հաշվապահի օգնական: // *Ռազմ.* **Aide de camp,** m. Համհարզ: // **Aide-maçon,** m. Որմնադրի օգնական, շենքի բանվոր: // **Aide-mémoire,** m. invar. Տեղեկագիրք:

**aider** v. tr. (1): Օգնել (տե՛ս Assister). aidez-le à mettre son habit, օգնեցեք նրան հագնվել. se faire aider, օգնություն ստանալ: // Օգնություն ցույց տալ (տե՛ս Secourir):
– v. intr. Aider à, օժանդակել:
– v. pr. **S'aider,** ինքն իրեն օգնել: // Օգտվել, մի բանի օգնությանը դիմել (de):
– v. récipr. **S'aider,** իրար օգնել:

**aïe!** Interj. Ա՜խ, վա՜խ, օ՜յ, ու՜ֆ:

**A.I.E.A.** [aiøa] f. *Հպվ.* Agence internationale de l'énergie atomique, Ատոմային էներգիայի միջազգային գործակալություն, ԱԷՄԳ:

**aïeul, aïeule** s. *Հնց.* Պապ, տատ: // Pl. Les aïleux, նախնիներ:

**aïeux** m. pl. Նախնիներ:

**aigle** m. *Կենդբ.* Արծիվ: // Արծիվ (շքանշան, դրամ). մեծադիր թուղթ. արծվաձև գրակալ: // *Աստղգ.* Արծվի համաստեղություն: // *Փխբ.* Հանճար, խոշոր մտածող (տե՛ս Phénix). à l'œil d'aigle, արծվի հայացքով, արծվահայաց:
– f. *Կենդբ.* էգ արծիվ: // Արծվանշան: // Pl. *Ռազմ.* Արծվանշան դրոշ:

**aiglefin** m. *Կենդբ.* Իշաձուկ:

**aiglon** m. *Կենդբ.* Արծվաձագ, արծվիկ: // *Փխբ.* Նապոլեոն II-ին տրված անուն:

**aigre** adj. Թթու, թթվահամ, թթվահոտ (տե՛ս Acide): // Անդուր, ծակող, ջղերի վրա ազդող (bruit). թթված (goût, odeur). չարաձայն, խայթող (ton). սուր (vent): // *Տեխ.* Բեկուն, դյուրաբեկ: // *Փխբ.* Անհաշտ, դյուրագրգիռ, մռայլ, անբարեհամբույր (caractère). aigre-doux, թթվաքաղցր:
– m. Sentir l'aigre, թթվածի հոտ գալ: // *Խսկց.* Tourner à l'aigre, անդուր՝ թունոտ բնույթ ստանալ:

**aigrefin** m. Խարդախ, խաբեբա (տե՛ս Escroc):

**aigrelet, ette** adj. Թթվաշ, թթվավուն:

**aigrement** adv. Խայթող՝ թունոտ ձևով՝ տոնով:

**aigrette** f. Փուփուլ, ցցունք (d'oiseau): // Փետրափունջ (de casque, de chapeau). ադամանդյա ցցունք (de diamant): // *Տեխ.* Ճառագայթների փունջ՝ խուրձ:

**aigreur** f. Թթվություն (d'un fruit). սրություն (du vent): // *Բժշկ.* Թթվայնություն (d'estomac): // *Տեխ.* Դյուրաբեկություն: // *Փխբ.* Անհաշտություն, դյուրագրգռություն, մռայլություն (du caractère):

**aigri, ie** adj. Թթված: // *Փխբ.* Չարացած, դառնացած:

**aigrir** v. tr. (2): Թթվեցնել (le lait, le vin): // *Փխբ.* Չարացնել, դառնացնել:
– v. intr. Թթվել:
– v. pr. **S'aigrir,** թթվել (lait, vin): // *Փխբ.* Չարանալ (caractère):

**aigrissement** m. Թթվում, թթվելը: // *Փխբ.* Չարացում, դառնացում:

**aigu, uë** [egy] adj. Սուր, սրածայր: // Սուր (տարբեր իմաստներով) [cri, voix, conflit, danger, esprit, regard]: // *Մաթ., Բժշկ.* Սուր:
– m. *Երժշտ., Ռադիո.* Դիսկանտ:

**aigue-marine** f. Ծովաբյուրեղ:

**aiguière** f. Սափոր:

**aiguillage** [egɥijaʒ] m. Երկաթուղային գծի սլաքի վարումը՝ ուղղումը:

**aiguille** [egɥij] f. Ասեղ. aiguille à coudre, à repriser, կարելու, կարկատելու ասեղ. aiguille à emballer, մախաթ. aiguille à tricoter, շյուղ, ճաղ. travaux d'aiguille, ասեղնագործություն: // Փշատերև, ասեղնատերև: // Սլաք (de boussole, de balance, d'horloge). talon aiguille, սուր կրունկ: // Ծայր, սայր (d'obélisque, de pyramide): // *Բժշկ.* Aiguille à injection, à suture, սրսկելու, կար դնելու ասեղ: // *Երկթղ.* Սլաք: // *Loc.* dans le sens (կամ) dans le sens inverse des aiguilles d'une montre, ժամացույցի սլաքի (կամ) սլաքի հակառակ ուղղությամբ. en forme d'aiguille, սրածայր:

**aiguiller** [egɥije] v. tr. (1): *Տեխ.* Սլաքը փոխել: // *Փխբ.* Կողմնորոշել (sur). aiguiller sur une autre voie, ուղղությունը փոխել, շեղել (la conversation):
– v. pr. **S'aiguiller,** կողմնորոշվել (sur):

**aiguilleter** [egɥijte] v. tr. (8a): Մետաղե ծայրապանակ հագցնել (կոշիկի կապի ծայրին):

**aiguillette** [egɥijɛt] f. Մետաղե ծայրապանակով կապ (de costume, de lacet). ուսակապ (d'épaulette): // *Խսկց.* Բադի սուկու մանր կտոր:

**aiguilleur** [egɥijœʀ] m. *Երկթղ.* Սլաքավար. poste d'aiguilleur, ազդանշանային պահակետ:

**aiguillier** [egɥijie] m. Ասղաման, ասղատուփ:

**aiguillon** [egɥijɔ̃] m. Խթան (de bouvier): // *Կենդբ.* Խայթոց, կիճ: // *Բսբ.* Փուշ: // *Փխբ.* Սուր ցավ (de la douleur). խթան, ազդակ (de l'orgueil), խայթոց (du remords):

**aiguillonnement** [egɥijɔnmɑ̃] m. Խթանում, խթանելը: // *Փխբ.* Գրգռում, դրդում, խթանում:

**aiguillonner** [egɥijɔne] v. tr. (1): Խթանել: // *Փխբ.* Գրգռել, դրդել, խթանել (տե՛ս Piquer, Stimuler):





**aiguillot** [egijo] m. *Ծով.* Առանցքակալ (նավի ղեկի):

**aiguisage** m. Տե՛ս Affûtage:

**aiguiser** v. tr. (1): Սրել. pierre à aiguiser, սրաքար: // *Փխբ.* Սրել, բացել (l'appétit). գրգռել (un sentiment):
– v. pr. **S'aiguiser,** սրվել:

**aiguiseur, euse** s. Դանակ-մկրատ սրող:

**aiguisoir** m. Սրիչ, սրող գործիք (տե՛ս Affiloir):

**ail** [aj] (pl. **ails,** *Հնց.* **aulx**) m. *Բսբ., Խհրր.* Սխտոր:

**aile** f. Թև (d'insecte, d'oiseau). avoir du plomb dans d'aile, վիրավոր լինել (թռչնի մասին). ծանր դրության մեջ լինել (*փխբ.*). battre des ailes, թևերը թափահարել, ճախրել. couper les ailes à, թևերը կտրել, թևաթափ անել: // Եզր, բոլորք (de chapeau): // *Եկեղ.* Թև (d'ange). թև (d'église): // *Ճրտրպ.* Թև (de bâtiment). թև (de moulin à vent): // *Ռազմ.* Թև (d'armée): // *Օդգ.* Թև (d'avion): // *Ավտ.* Թև, անվածածկոց: // *Բժշկ.* Ռունգ (du nez): // *Փխբ.* Թև (du vent). թև (որպես պաշտպանություն). voler de ses propres ailes, ինքնուրույն դառնալ, ոտքի կանգնել: // *Խսկց.* Ձեռք, թև:

**ailé, ée** adj. Թևավոր. la gent ailée, փետրավորների՝ թռչունների դաս:

**aileron** m. Թևի ծայր, թևեզր (d'oiseau). թև, լողակ, լողաթև (de pingouin, de requin): // Անվաթև (de roue de moulin): // *Օդգ.* Կայունարար, ստաբիլիզատոր:

**ailette** f. Թևիկ: // *Տեխ.* Գլխիկ (d'écrou). թև, թիանիվ (de turbine, de ventilateur). ունկ, կանթ (տարբեր մեխանիզմների). կցաշուրթ, կցապռունկ (de radiateur):

**ailier** m. *Մարզ.* Թևային հարձակվող:

**aillade** f. *Խհրր.* Սխտորով սոուս:

**aille** Տե՛ս Aller (15):

**ailler** v. tr. (1): Սխտորով համեմել (rôti). սխտոր քսել (croûton de pain):

**ailleurs** adv. Այլ տեղ, այլուր. l'esprit ailleurs, խելքն ուրիշ տեղ. nulle part ailleurs, ոչ մի ուրիշ տեղ. partout ailleurs, ուրիշ ամեն տեղ: // D'ailleurs, ի դեպ, բացի այդ. մյուս կողմից: // Par ailleurs, դրանից բացի, դրան գումարած, դրա հետ մեկտեղ, մյուս կողմից:

**ailloli** m. *Խհրր.* Սխտորով մայոնեզ:

**aimable** adj. Սիրելի, սիրո արժանի. ընկերական, մտերմական. հաճելի: // Սիրալիր (տե՛ս Affable). aimable envers qqn, մեկի հետ սիրալիր. c'est très aimable à vous, շատ սիրալիր եք. voulez-vous être assez aimable pour, բարի եղեք:

**aimablement** adv. Սիրալիրորեն, սիրալիրաբար, սիրալիրությամբ:

**aimant, ante** adj. Սիրող, սիրագորով, սիրառատ:

**aimant** m. Մագնիս: // *Փխբ.* Մագնիսական՝ ձգողական ուժ, ձգողականություն:

**aimantation** f. Մագնիսացում:

**aimanter** v. tr. (1): Մագնիսացնել. aiguille aimantée, մագնիսացած սլաք:

**aimé, ée** adj. Սիրված (de):
– s. Սիրելի, սիրեցյալ (de):

**aimer** v. tr. (1): Սիրել. se faire aimer, սերը շահել: // Aimer à faire, սիրել՝ դուր գալ մի բան անելը. il n'aime pas qu'on le fasse attendre, նա չի սիրում, որ իրեն սպասել են տալիս: // Aimer autant, նույն չափով սիրել. j'aime autant le miel que le sucre, որքան մեղր եմ սիրում, այնքան էլ՝ շաքար. j'aime autant vous dire, ավելի լավ է ձեզ ասեմ. j'aime autant venir, ավելի լավ է գամ. j'aime autant qu'elle ne vienne pas, կուզեի, որ նա չգար: // Aimer mieux que, գերադասել, նախընտրել. j'aimerais beaucoup mieux ne pas en parler, ես շատ ավելի կգերադասեի այդ մասին չխոսել:

**aine** f. Աճուկ:

**aîne, ée** adj. Ավագ. la branche aînée, ավագ շառավիղը:
– s. Ավագ. il esd notre aîné de cinq ans, նա մեզանից հինգ տարով մեծ է: // Pl. Մեծեր, ավագ սերնդի ներկայացուցիչներ:

**aînesse** f. Ավագություն. droit d'aînesse, ավագության իրավունք:

**ainsi** adv. Այսպես, այդպես, այսպիսով. ainsi soit-il, ամե՛ն. et ainsi de suite, և այդպես շարունակ. les choses étant ainsi, քանի որ այդպես է. pour ainsi dire, այսպես ասած. s'il en est ainsi, եթե այդպես է:
– conj. Այսպիսով, այսպես ուրեմն. ainsi que, ինչպես. ինչպես և. ainsi qu'il s'y attendait, ինչպես և նա սպասում էր. ainsi que ses frères, ինչպես և իր եղբայրները, իր եղբայրների նման:

**air** m. Օդ. au grand air, en plein air, բաց օդում, բացօթյա, դրսում. courant d'air, հոսանք, միջանցիկ քամի. dans les airs, en l'air, օդում. donner de l'air à (կամ) mettre à l'air, օդափոխել. prendre l'air, թարմ օդ շնչելու դուրս գալ. sans air, անօդ, հեղձուցիչ: // Քամի. il fait de l'air, քամի է: // *Տեխ.* Admission, conduite, sortie de l'air, օդի ներթողում, մղում, արտաթողում: // *Փխբ.* Մթնոլորտ: // *Loc.* En l'air, ընթացիկ, արդիական. տակնուվրա. հնարովի, երևակայական. թեթևամիտ. mettre tout en l'air, ամեն ինչ տակ-

նուվրա անել, խափանել. regarder en l'air, վերև նայել:

**air** m. Տեսք (aspect). avoir l'air à son aise, անկաշկանդ տեսք ունենալ. ça en a tout l'air, երևում է, որ հենց այդպես է. cela lui donne l'air d'un imbécile, դա նրան հիմարի տեսք է տալիս. elle a l'air d'être votre amie, նա կարծես ձեր ընկերուհին է. elle a l'air de vous attendre, նա կարծես ձեզ է սպասում: // Պահվածք, կեցվածք. շարժուձև. արտահայտություն (դեմքի). à l'air intelligent, խելացի թվացող. avoir un air de famille, նման լինել (նույն ընտանիքի անդամների մասին). de grand air, ազնվազարմ. un air noble, վսեմ կեցվածք. un drôle d'air տարօրինակ տեսք. prendre un air satisfait, ինքնագոհ տեսք ընդունել. se donner des airs, իրեն մեծ բանի տեղ դնել՝ երևակայել: // *Երժշտ.* Արիա, մեներգ, մեղեդի:

**airain** m. Բրոնզ, անագապղինձ. airain sonore, զանգ. d'airain, պղնձե, բրոնզե:

**aire** f. Կալ, տափարակ (d'une grange): // Բույն (d'un aigle): // *Մաթ., Ճրտրպ.* Տարածություն, մակերես: // *Ծով.* Քամու ուղղություն. կողմնացույցի հատվածամաս: // *Տեխ.* Երես (d'un marteau). երթևեկելի մաս (d'un pont): // *Օդգ.* Թռիչքուղի: // *Փխբ.* Ասպարեզ:

**airelle** f. *Բսբ.* Հապալաս, հավամրգի:

**ais** m. *Հնց.* Տախտակ:

**aisance** f. Թեթևություն, հեշտություն, դյուրություն. անկաշկանդություն. տարածություն, տեղ: // Ապահովվածություն, բարեկեցություն:

**aise** f. Գոհունակություն, ուրախություն. comblé d'aise, երջանկացած: // Անկաշկանդություն, հարմարություն. à votre aise, ինչպես կուզեք. en prendre à son aise, իր ուզածն անել. en prendre à son aise avec, չնեղվել, չանհանգստանալ, հաշվի չնստել. mettez-vous à l'aise, վերարկուն հանեք, հանվեք. mettre qqn l'aise, մեկին իրեն ազատ զգալու՝ պահելու պայմաններ ստեղծել. se sentir à l'aise, իրեն լավ (կամ) հանգիստ (կամ) ինչպես սեփական տանը զգալ. se sentir mal à l'aise, իրեն նեղված զգալ: // Pl. Հարմարավետություն. aimer ses aises, հարմարավետ կյանք սիրել: // Կյանքի բարիքներ (fortune). être à son aise, միանգամայն ապահովված լինել:

– adj. Ուրախ, գոհ. bien aise, շատ ուրախ, շատ գոհ:

**aisé, ée** adj. Հեշտ, դյուրին (տե՛ս Facile): // Պարզ, բնական, անկաշկանդ: // Հարմարավետ: // Ապահովված, բարեկեցիկ:

**aisément** adv. Հեշտությամբ, դյուրությամբ (տե՛ս Facilement):

**aisselle** f. *Բժշկ.* Անութ, թևատակ, կռնատակ:

**aîtres** m. Pl. Տան՝ բնակարանի ներքին դասավորություն:

**ajointer** v. tr. (1): *Տեխ.* Կցել, կցորդել:

**ajonc** m. *Բսբ.* Խոպանուկ, որոճ:

**ajour** m. Լուսանցույց, լուսանց, լուսամուտ (dans un mur). ցանցկեն քանդակ, ցանցաքանդակ: // Ցանցակար, մերեժկա:

**ajouré, ée** adj. Ցանցկեն, ցանցահյուս, լուսանցույց:

**ajourer** v. tr. (1): Ցանցկեն ծակծկել (le métal): // Ցանցակարել (le linge):

**ajournable** adj. Հետաձգելի:

**ajournement** m. Հետաձգում: // *Իրավք.* Դատական ծանուցագիր:

**ajourner** v. tr. (1): Հետաձգել (տե՛ս Remettre): // Քննությամբ չանցկացնել, քննությունը հետաձգել (un candidat). ajourner sine die, անորոշ ժամանակով հետաձգել:

– v. pr. **S'ajourner,** հետաձգվել:

**ajout** m. Ավելացում, հավելում, հավելված:

**ajouté** m. Հավելում, հավելված:

**ajouter** v. tr. (1): Ավելացնել, գումարել, կցել, միացնել: // *Loc.* Ajouter foi à, հավատ ընծայել:

– v. intr. Ajouter à, գումարել, մեծացնել:

– v. pr. **S'ajouter,** ավելանալ, գումարվել:

**ajustable** adj. Կարգավորելի, հարմարեցվող:

**ajustage** m. *Տեխ.* Տեղարկում, տեղակայում:

**ajusté, ée** adj. Հարմարեցված, վրան նստեցրած (habit):

**ajustement** m. Կարգավորում, հարմարեցում: // Հանդերձանք (habit):

**ajuster** v. tr. (1): Համարակցել, հավաքել (des outils): // Ուղղել, կարգի բերել (ses vêtements). նստեցնել (sur): // Նշան բռնել: // *Տեխ.* Տեղարկել, տեղակայել:

– v. pr. **S'ajuster,** հարմարվել, հարմարակցվել:

**ajusteur** m. *Տեխ.* Մոնտյոր, մոնտաժող, մեխանիկ:

**ajustoir** m. Ոսկեկշեռք:

**alacrité** f. Աշխուժություն:

**alaire** adj. *Օդգ.* Թևային. charge alaire, թևային բեռ:

**alaise** f. *Բժշկ,* Փռոց, փռվածք (հիվանդի տակի):

**alambic** m. *Ֆիզ.* Թորաման, թորիչ, զտիչ:

**alambiqué, ée** adj. *Խսկց.* Խճճված, մանվածապատ:

**alambiquer** v. tr. (1): *Խսկց.* Խճճել, բարդացնել:

**alangui, ie** adj. Նվաղ, տկար, մեղկ:

**alanguir** v. tr. (2): Թուլացնել, նվաղեցնել. alanguir son regard, աչքերին քնքշանվաղ արտահայտություն տալ:





– v. pr. **S'alanguir,** թուլանալ, նվաղել:

**alanguissement** m. Թուլացում, նվաղում:

**alarmant, ante** adj. Տագնապալի, տագնապեցնող, վախեցնող, անհանգստացնող:

**alarme** f. Տագնապ. donner, jeter, sonner l'alarme, տագնապ տալ, գցել, հնչեցնել. sonnette d'alarme, տագնապի ազդանշան: // *Փխբ.* Տագնապ, սարսափ, ահ, երկյուղ:

**alarmer** v. tr. (1): Տագնապահարել, տագնապեցնել, տագնապի մատնել, ահաբեկել:

– v. pr. **S'alarmer,** ահաբեկվել, տագնապել:

**alarmiste** s. Խուճապարար, խուճապարկու:

**Alaska** m. *Աշխգր.* Ալյասկա:

**albanais, aise** adj. Ալբանական:

– s. Ալբան, ալբանուհի:

– m. Ալբաներեն:

**Albanie** f. *Աշխգր.* Ալբանիա:

**albâtre** m. Ալաբաստր. d'albâtre, ալաբաստրե:

**albatros** m. *Կենդբ.* Ջկնկուլ:

**alberge** f. *Բսբ.* Մանր ծիրանի տեսակ:

**albigeois, oise** adj. Ալբիգոյական: // Ալբիգոյցի հերետիկոսներին վերաբերող:

– s. Ալբիգոյցի: // Pl. Ալբիգոյցիներ:

**albinisme** m. Ալբինիզմ, լսնամաշկություն:

**albinos** [albinos, ɔs] adj., s. Ալբինոս, լսնամաշկ:

**album** [albɔm] m. Ալբոմ:

**albumen** [albymɛn] m. *Բժշկ., Բսբ.* Սպիտակուց (ձվի). սպիտ:

**albumineux, euse** adj. *Բժշկ.* Սպիտակուցային:

**albuminoïde** adj. Սպիտակուցանման:

– m. Պրոտեին:

**albuminurie** f. *Բժշկ.* Սպիտակամիզություն:

**alcade** m. Դատավոր (Իսպանիայում):

**alcaïque** adj. *Գրկն.* Ալկյան (vers, strophe):

**alcalescent, ente** adj. *Քիմ.* Ալկալիական, կալաքարային:

**alcali** m. *Քիմ.* Ալկալի, կալաքար:

**alcalin, ine** adj. *Քիմ.* Ալկալիական, կալաքարային:

**alcaliniser** v. tr. (1): Ալկալիացնել:

**alcalinité** f. Ալկալիականություն, կալաքարայնություն:

**alcaloïde** m. *Քիմ.* Ալկալոիդ:

**alcarazas** [alkaʀazas] m. Ցրտոց (կավե աման, որում իսպանացիները սառեցնում են ջուրը):

**alchimie** f. Ալքիմիա:

**alchimique** adj. Ալքիմիական:

**alchimiste** s. Ալքիմիկոս:

**alcool** [alkɔl] m. Սպիրտ. alcool à brûler (կամ) dénaturé, բնափոխված սպիրտ, դենատուրատ. alcool solidifié, չոր սպիրտ. lampe à alcool, սպիրտայրոց. moteur à alcool, սպիրտային շարժիչ: // Ալկոհոլ: // *Խսկց.* Գինի, օղի, ոգելից խմիչք:

**alcoolat** [alkɔla, alkɔɔla] m. *Քիմ.* Թորած սպիրտ:

**alcoolémie** [alkɔlemi] f. *Բժշկ.* Taux d'alcoolémie, ալկոհոլի պարունակությունը արյան մեջ, ալկոհոլականություն:

**alcoolique** [alkɔllik] adj. Ալկոհոլային:

– s. Ալկոհոլիկ, ալկոհոլահար, ալկոհոլամոլ:

**alcoolisation** [alkɔlizasjɔ̃] f. Ալկոհոլացում, սպիրտի առաջացում, սպիրտավորում:

**alcoolisé, ée** [alkɔlize] adj. Սպիրտային, ալկոհոլային (boissons):

**alcooliser** [alkɔlize] v. tr. (1): Ալկոհոլացնել, սպիրտավորել, ալկոհոլ խառնել (le vin):

– v. pr. **S'alcooliser,** ալկոհոլանալ, սպիրտավորվել:

**alcoolisme** [alkɔlism] m. Ալկոհոլիզմ, ալկոհոլագարություն:

**alcoomètre** [alkɔmɛtʀ] m. Ալկոհոլաչափ, սպիրտաչափ:

**alcootest** [alkɔtɛst] m. Ալկոհոլի տեստ:

**alcôve** f. Ննկողնախորշ, մահճախորշ: // Ննջարան: // *Փխբ.* Ննկողին, կենակցություն:

**alcyon** m. *Կենդբ.* Ալկիոն, ծղնի (թռչուն):

**aldéhyde** m. *Քիմ.* Ալդեհիդ:

**aléa** m. Պատահականություն, դիպված, բախտի խաղ:

**aléatoire** adj. Անհաստատ, անհուսալի, պատահականությունից կախված, պատահական:

**alémanique** adj. Գերմանական. Suisse alémanique, գերմանական Շվեյցարիա:

**alène** f. Բիզ:

**alentour** adv. Շուրջը, շրջապատում, չորս կողմը. d'alenour, շրջակայքի, շրջակա:

– m. pl. Շրջակայք:

**alerte** adj. Աշխույժ, կայտառ, ժիր:

– f. Տագնապ. à la première alerte, առաջին իսկ ազդանշանից. donner l'alerte, տագնապ տալ. fausse alerte, սուտ տագնապ: // Զգոնություն. se tenir en alerte, զգոն լինել. tenir l'ennemi en alerte, թշնամու վրա հաճախակի հարձակումներ գործել: // *Օդգ.* Օդային տագնապ. fin d'alerte, օդային տագնապի ավարտի ազդանշան:

– intrj. *Ռազմ.* Ի զե՜ն: // *Խսկց.* Զգու՜յշ:

**alertement** adv. Աշխուժորեն, կայտառորեն:

**alerter** v. tr. (1): Ոտքի հանել: // Զգուշացնել, հայտնել, տեղեկացնել:

**alésage** m. *Տեխ.* Հորատում, շաղափում, գայլիկոնում. գլանի ներքին տրամագիծ:

**alèse, alèze** f. Տե՛ս Alaise:

**aléser** v. tr. (5): Հորատել, շաղափել, գայլիկոնել:

**aléseuse** f., **alésoir** m. *Տեխ.* Հորատ, հորատիչ:

**alevin** m. *Կենդբ.* Նորելուկ ձկնիկ, մանրաձկնիկ:

**alevinage** m. Մանրաձկնիկներով լցնելը, ձկնաբուծություն:

**aleviner** v. tr. Մանրաձկնիկներով լցնել:

**alevinier** m. Ձկնաբուծարան:

**alexandrin, ine** adj. Ալեքսանդրյան:
– m. Ալեքսանդրյան չափ:

**alezan, ane** adj. Շիկագույն, աշխետ:
– m. Աշխետ ձի:

**alèze** f. Տե՛ս Alaise:

**alfa** m. *Բուս.* Հալֆա:

**algarade** f. Վեճ, կռիվ. նախատինք, կշտամբանք: // Չարաճճի արարք, օյին (տե՛ս Incartade):

**algèbre** f. *Մաթ.* Հանրահաշիվ. par l'algèbre, հանրահաշվորեն:

**algébrique** adj. *Մաթ.* Հանրահաշվական:

**algébriquement** adv. *Մաթ.* Հանրահաշվորեն:

**algébriste** s. *Մաթ.* Հանրահաշվագետ:

**Alger** *Աշխգր.* Ալժիր (քաղաքը):

**Algérie** f. *Աշխգր.* Ալժիր (երկիրը):

**algérien, ienne** adj. Ալժիրական:
– s. Ալժիրցի:

**algérois, oise** adj. Ալժիր քաղաքին վերաբերող:
– s. Ալժիր քաղաքի բնակիչ:

**algorithme** m. *Մաթ.* Ալգորիթմ:

**algorithmique** adj. *Մաթ.* Ալգորիթմիկ:

**algue** f. *Բուս.* Ջրիմուռ:

**alias** [aljas] adv. Նույն ինքը, կոչված նաև:

**alibi** m. Այլուրեքություն, ալիբի. fournir, invoquer un alibi, ալիբի բերել:

**aliboron** m. *Խսկց.* Էշ, ավանակ. հիմար, ապուշ:

**aliénabilité** f. Օտարման ենթակա լինելը, օտարելիություն:

**aliénable** adj. Օտարման ենթակա, օտարելի:

**aliénant, ante** adj. Օտարող:

**aliénataire** m. *Իրավբ.* Անձ, որի օգտին կատարվում է օտարում. գնորդ:

**aliénation** f. *Իրավբ.* Օտարում, փոխանցում (de biens): // *Բժշկ.* Հոգեկան խանգարում, խելագարություն (տե՛ս Folie):

**aliéné, ée** adj. Խանգարված, խախտված, խելագար:
– m. Հոգեկան հիվանդ, խելագար (տե՛ս Fou):

**aliéner** v. tr. (5): Օտարել (des biens, une terre, un titre): // *Բժշկ.* Խանգարել (l'esprit): // *Փխբ.* Իրենից հեռացնել, սառեցնել, կորցնել (la sympathie):
– v. pr. **S'aliéner,** կորցնել (la sympathie):

**aliéniste** s. Հոգեբույժ:

**alignement** m. Շարք (ընդհանրապես). շենքերի շարք. dépasser l'alignement, շենքերի շարքից առաջ անցնել. frapper d'alignement, թույլ չտալ շենքերի շարքից առաջ անցնել: // *Տպգր.* Հավասար գծով շարելը: // *Առևտր.* Հավասարեցում. alignement des comptes, հաշվեկշռի հավասարեցում: // *Ռազմ.* Հավասարում, տողան:

**aligner** v. tr. (1): Մի գծի վրա դասավորել՝ շարել: // Հավասար շարքով շարել (des maisons): // Հավասարեցնել (des comptes): // *Ռազմ.* Շարք կանգնեցնել:
– v. pr. **S'aligner,** շարք կանգնել, հավասարվել: // *Խսկց.* S'aligner avec, մեկի հետ մենամարտի՝ կռվի պատրաստվել:

**aliment** m. Պարեն, սննդամթերք, սնունդ: // Pl. *Իրավբ.* Ալիմենտ, ապրուստադրամ: // *Փխբ.* Նեցուկ, օգնություն:

**alimentaire** adj. Սննդային, սննդական, սննդարար (տե՛ս Nutritif). conserves alimentaires, պահածո ուտելիք. pâtes alimentaires, մակարոնեղեն. produits alimentaires, սննդամթերք: // *Իրավբ.* Ալիմենտային. pension alimentaire, ալիմենտ:

**alimentation** f. Սնուցում, սննդառություն, սնունդ (տե՛ս Nourriture). alimentation défectueuse, թերսնում, թերասնում: // *Առևտր.* Ուտելիք, պարեն. rayon d'alimentation, պարենամթերքների բաժին: // *Տեխ.* Մատակարարում, սնուցում. alimentation en combustible, վառելանյութով ապահովելը. tuyau d'alimentation, սնուցող խողովակ:

**alimenter** v. tr. (1): Սնել, սնունդ տալ, կերակրել, սնուցել. alimenter en, մատակարարել, ապահովել:
– v. pr. **S'alimenter,** սնվել, կերակրվել, ուտել. ապրել (de): // *Տեխ.* S'alimenter en combustible, վառելանյութով ապահովվել:

**alinéa** m. Նոր տող, պարբերություն:

**aliquote** adj., f. *Մաթ.* Բազմապատկիչ. քանորդ:

**alise** f. *Բուս.* Արոսենու պտուղ, ծտի խնձոր:

**alisier** m. *Բուս.* Արոսի, արոսենի:

**alité, ée** adj. Անկողնում գամված, անկողնային, պառկած:

**aliter** v. tr. (1): Անկողնում գամել, անկողին գցել, անկողնում պառկեցնել:
– v. pr. **S'aliter,** անկողին ընկնել, հիվանդանալ:







**alizés** m. pl. Ալիզյան՝ պասսատային քամիներ, պասսատահողմ, պասսատ:

**allaitement** m. Կաթ տալը, կուրծք տալը, ստնտվություն:

**allaiter** v. tr. (1): Կաթ տալ, կուրծք տալ:

**allant, ante** adj. Թեթևաշարժ, կայտառ, առույգ:
– m. Կայտառություն, առույգություն, ավյուն (տե՛ս Entrain). avoir beaucoup d'allant, եռանդով՝ ավյունով լի լինել:

**alléchant, ante** adj. Գրավիչ, հրապուրիչ, գայթակղիչ, ախորժալի:

**allèchement** m. Գայթակղում, հրապուրում:

**allécher** v. tr. (5): Գայթակղել, հրապուրել:

**allée** f. Նրբանցք: // Արահետ, կածան (d'un bois). ծառուղի (d'un jardin, d'un parc):

**allégation** f. Վկայակոչություն, հաստատում:

**allège** f. *Ծով.* Լիխտեր (բեռնաբարձ նավակ՝ մեծ նավերը բեռնելու և բեռնաթափելու համար). frais d'allège, բեռնաթափման ծախսեր:

**allégeance** f. *Հնց.* Հավատարմություն, նվիրվածություն:

**allégement** m. Թեթևացում (d'un poids): // *Ֆին.* Կրճատում (d'un impôt): // *Իրավբ.* Մեղմացում, թեթևացում (d'une peine): // *Փխբ.* Թեթևացում (d'une douleur, d'un souci):

**alléger** v. tr. (5): Թեթևացնել, մեղմացնել:
– v. pr. **S'alléger,** թեթևանալ:

**allégorie** f. Ալեգորիա, այլաբանություն:

**allégorique** adj. Այլաբանական:

**allégoriquement** adv. Այլաբանորեն, այլաբանաբար:

**allégoriste** s. Այլաբան:

**allègre** adj. Կայտառ, աշխույժ (տե՛ս Alerte): // Կենսուրախ, կենսախինդ, զվարթ:

**allégrement** adv. Աշխուժորեն, կայտառորեն. զվարթորեն:

**allégresse** f. Կայտառություն, զվարթություն:

**alléguer** v. tr (5): Մեջ բերել, մեջբերել, վկայակոչել, հղել (un texte de loi, un auteur). բերել (une excuse, une preuve, une raison):

**alléluia** m. *Եկեղ.* Փառաբանական օրհներգություն:
– interj. Ալելուիա:

**Allemagne** f. *Աշխգր.* Գերմանիա. l'ambassadeur d'Allemagne, Գերմանիայի դեսպանը:

**allemand, ande** adj. Գերմանական:
– s. Գերմանացի, գերմանուհի:
– m. Գերմաներեն. le bas allemand, ստորին գերմաներեն:

**allemande** f. Գերմանապար:

**aller** v. intr. (15): **1.** Գնալ (à). aller en autobus, en bateau, à bicyclette, à cheval, à pied, en traîneau, en voiture, ավտոբուսով, գնալ նավով, հեծանվով, ձիով, ոտքով, սահնակով, մեքենայով. aller son chemin, իր ճամփան գնալ. aller à grands pas, մեծ քայլեր անել. aller au trot, վարգով գնալ՝ ընթանալ (cheval). aller et venir, գնալ-գալ: // **2.** Տանել (route): // **3.** Տարածվել: // **4.** Գործել, աշխատել. aller comme sur des roulettes, յուղի նման գնալ. cette montre ne va pas, այս ժամացույցը չի աշխատում: // **5.** Լինել (լավ, վատ), իրեն զգալ. comment allez-vous ?, ça va, ça va mieux, ça ne va pas, ինչպե՞ս եք, լավ եմ, ավելի լավ եմ, լավ չեմ: // **6.** Հարմար լինել, լավ նստել. aller avec, սազել, բռնել. ce chapeau ne va pas bien. այս գլխարկը լավ չի նստում. cette robe vous va bien, այս շրջազգեստը ձեզ վրա լավ է նստում: // **7.** Սազել, հարմար լինել. le blanc me va bien, սպիտակն ինձ շատ է սազում. ce climat ne lui va pas, այս կլիման նրան հարմար չի, վրան չի գալիս: // **8.** Կարելի՝ ընդունելի լինել. ça ne peut pas aller, այդպես չի կարելի: // **9.** Մնալ, դիմանալ. ce manteau n'ira pas loin, այս վերարկուն շատ չի դիմանա: // **10.** Գնալ մի բանի. aller chercher, գնալ բերելու. aller se coucher, պառկել քնելու. aller le voir, գնալ նրան տեսնելու, այցելել նրան: // **11.** Մի բան անելու վրա լինել. elle va chanter, նա հիմա երգելու է: // **12.** Հասնել, հավասարվել (à): // **13.** Հատկացվել, հասնել, բաժին ընկնել (à): // **14.** *Ռազմ.* Aller au feu, մարտի գնալ: // **15.** *Ծով.* Aller au fond, ջրի տակն անցնել, ընկղմվել, խորտակվել: // *Loc.* Aller au-devant du malheur, դժբախտությանը ընդառաջ գնալ. aller jusqu'au bout, մինչև վերջ հասնել. allons!, դե՛, ապա՛. allons bon!, ա՜յ քեզ բան. allons donc! ի՞նչ ես (եք) ասում. ça va!, լավ է. լավ, համաձայն եմ. cela va de soi, ինքնին՝ ինքնըստինքյան հասկանալի է, պարզ է. on y va!, սկսե՛նք. y aller doucement, զգուշությամբ մի բան անել. y aller de bon cœur, ի սրտե մի բան անել, սրտանց գործին կպչել. il y va de sa vie, նրա կյանքն է վտանգված. il y va de la vie, կյանքիմահու խնդիր է. il en va de même pour vous, նույնը ձեզ է վերաբերում:
– v. pr. **S'en aller,** գնալ (մի տեղից), հեռանալ, թողնել հեռանալ: // Տեղափոխվել (նոր բնակարան). կյանքից հեռանալ, մահանալ. մաքրվել, անցնել (լվանալուց). s'en aller furtivemenr, աննկատելի գնալ:
– m. Գնալը. à l'aller, գնալու ճանապարհին: // *Երկթղ.* Մի ուղղությամբ գնալու տոմս: // *Loc.* Pis-aller, ծայրահեղ միջոց. au pis aller, ծայրահեղ դեպքում (տե՛ս Pis):

**allergène** m. *Բժշկ.* Ալերգեն, ալերգիա առաջացնող նյութ:

**allergie** f. *Բժշկ.* Ալերգիա:

**allergique** adj. *Բժշկ.* Ալերգիկ, ալերգիայով տառապող:

**alleu** m. *Հնց.* ժառանգական կալվածք:

**alliable** adj. Համատեղելի:

**alliacé, ée** adj. *Բսբ.* Սխտորային, սխտորի:

**alliage** m. Համաձուլվածք, խառնուրդ. sans alliage, անխառն, մաքուր, զուտ:

**alliance** f. Դաշնակցություն, միություն (internationale): // Ամուսնական դաշն, ամուսնություն, ամուսնությամբ ստեղծված ազգակցություն (par mariage). parent par alliance, ամուսնու (կնոջ) կողմից բարեկամ: // Նշանի մատանի: // Կապակցություն, համակցություն:

**allié, ée** adj. Դաշնակից: // Ազգակից (par mariage):
– s. Դաշնակից (nation): // Ազգական. allié par le sang, արյունակից ազգական:

**allier** v. tr. (1): Միավորել (par traité): // Միացնել, միավորել (par mariage) [à]: // Միախառնել (les couleurs). միաձուլել (des métaux). խառնել (avec): // *Փխբ.* Միավորել:
– v. pr. **S'allier,** դաշնակցել, միավորվել (par traité): // Միանալ, միավորվել, ամուսնանալ (à): // Խառնվել (couleurs). միաձուլվել (métaux):

**alligator** m. *Կենդբ.* Ալիգատոր:

**allitération** f. *Քրկն.* Ալիտերացիա, բաղաձայնույթ:

**allô!** interj. Ալլո՜, լսում եմ (հեռախոսով խոսելիս):

**allocataire** s. Նպաստ ստացող, նպաստառու:

**allocation** f. Բաշխում (d'actions). հատկացում (de crédits): // Նպաստ, դրամական օգնություն (de chômage). allocations familiales, երեխաների նպաստ: // Փոխհատուցում. դոտացիա, լրավճար;

**allocution** f. Խոսք, ելույթ:

**allomorphe** m. *Քրկն.* Այլաձևակ:

**allonge** f. Հավելված, հավելամաս, երկայնորդ, կցան: // Միսը կախելու կեռ (de boucherie): // *Իրավք.* Հավելյալ թերթ: // *Ծով.* Նեցուկ, դիմհար: // *Մարզ.* Ձեռքի մեկնում՝ պարզում (բռնցքամարտում):

**allongé, ée** adj. Երկայնաձիգ, երկարացված: // Երկարավուն, երկայնաձև: // Ձգված:

**allongement** m. Երկարացում, երկարաձգում: // *Իրավք.* Երկարաձգում, ձգձգում, ուշացում:

**allonger** v. tr. (7): Երկարացնել: // Երկարել, մեկնել (le bras, la main). դուրս քաշել, դուրս հանել (un fil de métal). երկարացնել (une robe). գցել (une ombre). allonger le pas, քայլերն արագացնել: // *Խհրր.* Ջուր՝ մսաջուր ավելացնել, նոսրացնել (une sauce): // *Իրավք.* Երկարաձգել, ձգձգել: // *Ռազմ.* Allonger le tir, երկարացնել հրաձգության հասողությունը: // *Խսկց.* Տալ (de l'argent). հասցնել (un coup). allonger à qqn un bon pourboire, մեկին առատ թեյադրամ տալ. allonger une gifle à qqn, մեկին ապտակ հասցնել:
– v. intr. Les jours allongent, օրերը երկարում են:
– v. pr. **S'allonger,** երկարել, երկարանալ: // Մեկնվել, պառկել. s'allonger pendant une heure, մի ժամ պառկել: // *Փխբ.* Ձգձգվել, դանդաղ անցնել (jours): // *Խսկց.* Ձգվել (visage):

**allopathe** adj. *Բժշկ.* Այլաբույժ:

**allopathie** f. *Բժշկ.* Ալոպաթիա, այլաբուժություն:

**allophone** m. *Քրկն.* Այլահնչակ:

**allotropie** f. *Քիմ.* Բազմաձևություն:

**allotropique** adj. *Քիմ.* Բազմաձև:

**allouable** adj. Հատկացվող:

**allouer** v. tr. (1): Հատկացնել, տալ (une part, une portion, une somme) [տե՛ս Attribuer]: // Պարգևել, շնորհել (տե՛ս Assigner):

**allumage** m. Վառում, վառելը (d'un feu, d'une lampe): // *Ռազմ.* Վառելը, կպցնելը (d'une mine): // *Տեխ.* Վառելը, միացնելը. couper l'allumage, անջատել:

**allume** Տե՛ս Allumer: // **Allume-feu,** m. invar. Խանձող: // **Allume-gaz,** m. invar. Գազավառիչ:

**allumé, ée** adj. Վառված (feu, lampe): // *Փխբ.* Շողշողուն, բորբոքված (regard). շիկնած (teint):

**allumer** v. tr. (1): Վառել (le feu, le gaz, la lampe). միացնել (l'électricité). վառել, կպցնել (une cigarette, une mine): // Բորբոքել (une guerre, une passion):
– v. intr. Լույսը վառել՝ միացնել: // Ծխախոտը կպցնել, սկսել ծխել:
– v. pr. **S'allumer,** վառվել, բռնկվել, լուսավորվել: // *Փխբ.* Բորբոքվել (guerre, personne). բոցավառվել (regard):

**allumette** f. Լուցկի: // *Խհրր.* Allumettes au fromage, պանրով ձողիկներ:

**allumeur** m. Լուցիչ, վառիչ. allumeur de réverbères, լապտերալույց, լապտերավառ:

**allumeuse** f. Հրապուրիչ՝ գայթակղիչ կին:

**allumoir** m. Վառիչ:

**allure** f. Ընթացք, քայլք (տե՛ս Train, Vitesse). allonger, régler l'allure, արագացնել՝ հարմարեցնել քայլերը. à toute allure, ամբողջ թափով. à vive allure, արագ քայլերով: // Քայլվածք. allure chancelante, երերուն քայլվածք: // Կեցվածք, պահվածք. d'allures libres, ազատաբարո. d'allure louche, կասկածելի արտաքինով: // Տեսք. վայելչություն. avoir l'allure d'un clochard, թափառաշրջիկի տեսք ունենալ: // *Փխբ.* Ընթացք (des événements):





**allusif, ive** adj. Ակնարկող, ակնարկ պարունակող:

**allusion** f. Ակնարկ. allusion peu voilée, vague, թափանցիկ, աղոտ ակնարկ. faire allusion à, ակնարկել:

**alluvial, ale, alluvionnaire** adj. *Աշխգր.* Ողողատի, տղմային, տղմաշերտային:

**alluvion** f. *Աշխգր.* Ողողատ, հեղեղատ. terrains d'alluvion, տղմահող, ջրաբեր հող, ջրաբերուկ:

**alluvionnement** m. Հեղեղուտ:

**Alma-Ata, Almaty** *Աշխգր.* Ալմա Աթա, Ալմաթի:

**almanach** [almana] m. Ալմանախ, տարեգիր:

**almée** f. Վարձակ, եգիպտական պարուհի:

**aloès** [alɔɛs] m. *Բսբ.* Հալվե, ալոե:

**aloi** m. Հարգ. de bon aloi, լիարժեք, բարձրորակ. monnaie de mauvais aloi, ցածր հարգի մետաղադրամ: // Որակ, արժեք. de bon aloi, հիմնավոր (argument):

**alopécie** f. *Բժշկ.* Հերաթափություն:

**alors** adv. Այդ ժամանակ (à ce moment-là). jusqu'alors, մինչ այդ. le roi d'alors, այդ ժամանակվա թագավորը: // Այսպիսով, ուրեմն. այդ դեպքում, հետևաբար. հետո, այնուհետև. alors que, այն ժամանակ, երբ. մինչդեռ. alors même que, անգամ այն ժամանակ, երբ. et alors?, ի՞նչ անենք. et puis alors?, հետո ի՞նչ:

**alose** f. *Կենդբ.* Հարնգամայր:

**alouette** f. *Կենդբ.* Արտույտ:

**alourdi, ie** adj. Ծանրացած, ծանր (տե՛ս Lourd): // *Փխբ.* Դանդաղամիտ, ծանրամիտ (esprit):

**alourdir** v. tr. (2): Ծանրացնել (un fardeau). ծանրաբեռնել (qqn): // *Փխբ.* Դանդաղամիտ, ծանրամիտ դարձնել:
– v. pr. **S'alourdir,** ծանրանալ, գիրանալ: // *Փխբ.* Ծանրանալ, ճնշել (charges, soucis). դանդաղամիտ՝ ծանրամիտ դառնալ (esprit):

**alourdissement** m. Ծանրացում: // *Փխբ.* Դանդաղամտություն, ծանրամտություն:

**aloyau** m. *Խհրր.* Տավարի սուկի:

**alpaga** m. *Կենդբ.*, *Առևտր.* Ալպակա. գործվածք ալպակայի բրդից:

**alpage** m. Արոտավայր բարձր լեռներում:

**alpaguer** v. tr. (1): *Ժրգ.* Ձերբակալել, բռնել (qqn):

**alpe** f. *Աշխգր.* Ալպյան արոտավայր:

**alpenstock** [alpɛnstɔk] m. Երկարածայր ցուպ (տե՛ս Piolet):

**Alpes** f. pl. *Աշխգր.* Ալպեր, Ալպյան լեռներ:

**alpestre** adj. Ալպիական, ալպյան:

**alpha** m. Ալֆա: // *Ֆիզ.* Rayons alpha, ալֆա ճառագայթներ:

**alphabet** m. Այբուբեն: // Այբբենարան:

**alphabétique** adj. Այբբենական:

**alphabétiquemant** adv. Այբբենական կարգով:

**alphabétisation** f. Գրաճանաչ դարձնելը, գրաճանաչության տարածում:

**alphabétiser** v. tr. (1): Գրաճանաչ դարձնել, գրել-կարդալ սովորեցնել:

**alpin, ine** adj. *Աշխգր.*, *Ռազմ.* Ալպյան, ալպիական:

**alpinisme** m. Ալպինիզմ, լեռնարշավ, լեռնային տուրիզմ. faire de l'alpinisme, ալպինիզմով զբաղվել:

**alpiniste** s. *Մարզ.* Ալպինիստ, լեռնարշավորդ:

**Alsace** f. *Աշխգր.* Էլզաս:

**alsacien, enne** adj. Էլզասյան:
– s. Էլզասցի, էլզասուհի:

**Altaï** m. *Աշխգր.* Ալթայ:

**altérabilité** f. Փոփոխելիություն:

**altérable** adj. Փոփոխելի, փոփոխության ենթակա:

**altérant, ante** adj. Ծարավեցնող:
– m. *Բժշկ.* Նյութափոխանակությանը նպաստող միջոց:

**altération** f. *Առևտր.* Կեղծում, խարդախում: // *Ֆին.* Դրամանենգություն: // *Բժշկ.* Փչացնելը (de la santé). այլայլում, այլայլվելը (du visage). փոփոխություն, այլայլում (de la voix): // *Երժշտ.* Ելևէջում: // *Փխբ.* Աղավաղում (des faits, de la vérité). կեղծում (des textes):

**altercation** f. Վեճ, բանավեճ, կռիվ:

**altéré, ée** adj. *Առևտր.* Կեղծած, խարդախված (produit): // *Ֆին.* Կեղծած (monnaie): // *Բժշկ.* Փչացած (santé). այլայլված (visage). փոխված, այլայլված (voix): // *Փխբ.* Աղավաղված (fait, vérité). կեղծած (texte):

**altéré, ée** adj. Ծարավ (տե՛ս Assoiffé): // *Փխբ.* Altéré de sang, արյան ծարավի:

**alter ego** m. Փոխանորդ:

**altérer** v. tr. (5): *Առևտր.* Կեղծել, խարդախել (un produit): // *Ֆին.* Կեղծել (la monnaie): // *Բժշկ.* Փչացնել (la santé). այլայլել (la visage):

// *Փխբ.* Պղտորել (le bonheur). աղավաղել (les faits). կեղծել (un texte):
– v. pr. **S'altérer,** փչանալ, վնասվել (denrée): // Փչանալ (santé). այլայլվել (visage). փոխվել, այլայլվել (voix):

**altérer** v. tr. (5): Ծարավեցնել:
– v. intr. Ծարավ առաջացնել:

**altérité** f. *Փիլ.* Այլակերպություն:

**alternance** f. Փոխհաջորդում, հերթագայություն: // *Քրկն.* Հերթագայություն: // *Գտնտ.* Alternance des cultures, ցանքաշրջանառություն:

**alternant, ante** adj. Հերթագայող, փոխհաջորդող:

**alternateur** m. *Էլ.* Փոփոխական հոսանքի գեներատոր:

**alternatif, ive** adj. Փոխհաջորդող, հերթագայող: // *Էլ.* Փոփոխական:

**alternative** f. Փոխհաջորդում, հերթագայում: // Երկընտրանք:

**alternativement** adj. Հաջորդաբար:

**alterne** adj. *Մաթ.* Հակադիր (angles):

**alterné, ée** adj. Փոխհաջորդող, հերթագայող: // *Գտնտ.* Culture alternée, ցանքաշրջանառություն:

**alterner** v. tr. (1): *Գտնտ.* Փոփոխել (les cultures):
– v. intr. Հերթագայել (avec): // Փոխհաջորդել:

**altesse** f. Բարձրություն:

**altier, ière** adj. Հպարտ, գոռոզ, մեծամիտ (տե՛ս Hautain):

**altimètre** m. *Օդգ.* Ալտիմետր, բարձրաչափ:

**altiport** m. Լեռնային օդակայան:

**altiste** s. *Երժշտ.* Ալտիստ, ալտահար:

**altitude** f. Բարձրություն: // *Օդգ.* Altitude d'utilisation, թռիչքի բարձրություն. cote d'altitude, բարձրություն ծովի մակերևույթից. prendre de l'altitude, բարձրություն վերցնել: // *Բժշկ.* Cure d'altitude, լեռնաբուժություն:

**alto** m. *Երժշտ.* Ալտ. կոնտրալտո:

**altocumulus** [altokymylys] m. Բարձրակուտակ ամպ:

**altostratus** [altostʀatys] m. Բարձրաշերտավոր ամպ:

**altruisme** m. Ալտրուիզմ, այլասիրություն:

**altruiste** adj. Այլասիրական:
– s. Ալտրուիստ, այլասեր:

**aluminate** m. *Քիմ.* Ալյումինատ:

**alumine** f. *Քիմ.* Ալյումինաթթու:

**aluminium** [alyminjɔm] m. Ալյումին:

**alun** m. *Քիմ.* Շիբ, պաղլեղ:

**aluner** v. tr (1): *Քիմ.* Շբել, պաղլեղել:

**alunir** v. intr (2): Լուսնի վրա վայրէջք՝ լուսնէջք կատարել:

**alunissage** m. Վայրէջք լուսնի վրա, լուսնէջք:

**alunite** f. Ալունիտ, լուսնաքար:

**alvéolaire** adj. Բջջային (formation):

**alvéole** m. Բջիջ, մեղրաբջիջ: // Խոռոչ: // *Բժշկ.* Ալվեոլ, ատամնաբույն, ատամնախորշ:

**alvéolé, ée** adj. Բջջային, բջջավոր: // Խոռոչային:

**amabilité** f. Սիրալիրություն, բարեհաճություն: // Pl. Բարեկրթություն, հոգածություն:

**amadou** m. Աբեթ:

**amadouer** v. tr. (1): Սիրաշահել, խաթրն առնել, քաղցրությամբ համոզել, գլուխը յուղել (տե՛ս Cajoler): // Մեղմացնել, կակղեցնել:

**amaigrir** v. tr. (2): Նիհարեցնել (տե՛ս Amincir):
– v. pr. **S'amaigrir**, նիհարել. s'amaigrir terriblement, սարսափելի նիհարել, չոփ դառնալ:

**amaigrissant, ante** adj. Նիհարեցնող:

**amaigrissement** m. Նիհարելը, նիհարում (տե՛ս Dépérissement, Émaciation):

**amalgamation** f. *Քիմ.* Ամալգամացիա, ամալգամացում: // *Ֆին.* Միավորում, միախառնում (de capitaux):

**amalgame** m. Ամալգամ (տե՛ս Mélange): // *Փխբ.* Խառնուրդ:

**amalgamer** v. tr. (1): Ամալգամել, սնդկազօծել: // *Փխբ.* Միավորել, միախառնել (տե՛ս Mélanger):
– v. pr. **S'amalgamer,** միաձուլվել, միախառնվել:

**aman** m. Ողորմածություն, գթություն. demander l'aman, անձնատուր լինել, հանձնվել:

**amande** f. Նուշ. ընկույզի՝ կորիզի միջուկ. en amande, նշաձև:

**amandier** m. *Բսբ.* Նշենի:

**amanite** f. *Բսբ.* Ճանճասպան (vénéneuse):

**amant** m. Սիրեկան (տե՛ս Amoureux): // *Փխբ.* Սիրահար, երկրպագու:

**amante** f. Սիրուհի: // *Հնց.* Սիրած կին, սիրելի:

**amarante** f. *Բսբ.* Հավակատար:
– adj. invar. Մուգ կարմիր:

**amarinage** m. *Ծով.* Վարժեցում (d'un marin). անձնակազմով համալրելը (d'un vaisseau):

**amariner** v. tr. (1): *Ծով.* Վարժեցնել (un matelot). անձնակազմով համալրել (un vaisseau):
– v. pr. **S'amariner,** ծովին վարժվել:

**amarrage** m. *Ծով.* Կառանում, կառանելը:
– v. pr. **S'amarrer**, կառանվել:







**amas** m. Կույտ, շեղջ. amas de neige, ձնակույտ: // *Աստղգ.* Amas stellaire, աստղակույտ:

**amasser** v. tr. (1): Կիտել, կուտակել (տե՛ս Accumuler):
– v. pr. **S'amasser,** կուտակվել: // *Բժշկ.* Թարախակալել:

**amasseur** m. Կուտակող:

**amateur** m. Սիրահար, երկրպագու. amateur de cinéma, կինոյի երկրպագու. amateur d'oiseaux, թռչնասեր: // Սիրող, դիլետանտ. dessin d'amateur, սիրողական նկար. faire de la peinture en amateur, նկարչությամբ զբաղվել որպես դիլետանտ. travailler en amateur, սեփական հաճույքի համար աշխատել (կամ) դիլետանտի նման աշխատել: // *Առևտր.* Գնորդ, հաճախորդ:

**amateurisme** m. Սիրողություն, դիլետանտություն, ոչ պրոֆեսիոնալություն:

**amatir** v. tr. (2): Փայլատել:

**amaurose** f. *Բժշկ.* Մթակնություն, մթարություն:

**Amazone** [amazon] f. *Աշխգր.* Ամազոն:

**amazone** f. *Հնց.* Ամազոնուհի: // Հեծյալ կին, հեծելուհի, ամազոնուհի. ամազոնակ, ամազոնկա (հագուստ). monter en amazone, ձի հեծնել՝ երկու ոտքերը թամբի նույն կողմում:

**ambages** f. pl. Մանվածապատություն, մանվածապատ խոսք. sans ambages, շիտակ, պարզ:

**ambassade** f. Դեսպանություն, դեսպանատուն: // *Խսկց.* Առաքելություն. envoyer qqn en ambassade, մեկին միջնորդության ուղարկել:

**ambassadeur** m. Դեսպան: // *Խսկց.* Պատվիրակ, լրաբեր:

**ambassadrice** f. *Հնց.* Դեսպանի կին: // Դեսպանուհի: // Պատվիրակուհի, լրաբեր կին:

**ambiance** f. Շրջապատ, միջավայր: // Մթնոլորտ, տրամադրություն. ambiance générale, ընդհանուր տրամադրություն:

**ambiant, ante** adj. Շրջապատող. air ambiant, մթնոլորտ:

**ambidextre** adj. Երկաջողակ:
– s. Երկաջողակ, երկու ձեռքերով հավասարապես աշխատող անձնավորություն:

**ambigu, uë** [ɑ̃bigy] adj. Հանելուկային (avertissement). կասկածելի (caractère). երկիմաստ (expression). անորոշ (réponse):

**ambiguïté** [ɑ̃bigɥite] f. Երկիմաստություն, անորոշություն:

**ambitieusement** adv. Փառասիրաբար:

**ambitieux, euse** adj. Փառասեր, փառամոլ, ձգտող, հավակնություն ունեցող. փառասիրական, փառամոլական: // Հավակնոտ, աչքի զարնող (allures). ճոռում (style):
– m. Փառասեր, փառամոլ, կարիերիստ (տե՛ս Arriviste):

**ambition** f. Փառասիրություն, իշխանասիրություն: // Ձգտում, ցանկություն. mettre son ambition à, ամբողջ սրտով ձգտել:

**ambitionner** v. tr. (1): Ձգտել, տենչալ, փափագել:

**ambivalence** f. Երկակիություն:

**ambivalent, ente** adj. Երկակի:

**amble** m. Շորոր, օրոր (ձիու մասին). aller l'amble, շորորալով՝ միակողմանի ընթացքով գնալ (ձիու մասին):

**ambler** v. tr. (1): Շորորալով գնալ, միակողմանի ընթանալ (ձիու մասին):

**ambon** m. *Ճրտրպ.* Ամբիոն (եկեղեցում):

**ambre** m. Համպար (gris). սաթ (jaune): // *Խսկց.* Fin comme l'ambre, խորամանկ, խարդախ:

**ambré, ée** adj. Դեղին սաթի գույն ունեցող. համպարով օծված:

**ambrer** v. tr. (1): Համպարով օծել:

**ambroisie** f. Ամբրոս, ամբրոսիա. d'ambroisie, ամբրոսական, ամբրոսային:

**ambrosiaque** adj. Ամբրոսական, ամբրոսային:

**ambulance** f. Բժշկական կետ, բուժկետ: // *Ավտ.* Շտապ օգնության մեքենա: // Սանիտարական սայլակ, սայլակ-պատգարակ: // *Ռազմ.* Դաշտային հիվանդանոց:

**ambulancier** m. *Ռազմ.* Բուժկետի սանիտար: // Շտապ օգնության մեքենայի վարորդ:

**ambulancière** f. *Ռազմ.* Բուժկետի սանիտարուհի: // Շտապ օգնության մեքենայի վարորդուհի:

**ambulant, ante** adj. Շրջիկ, թափառական. marchand ambulant, շրջիկ վաճառական (տե՛ս Nomade): // *Թատր.* Comédiens ambulants, շրջիկ դերասաններ:
– m. Շրջիկ փոստի աշխատող:

**ambulatoire** adj. Շարժական: // *Բժշկ.* Ամբուլատոր, ամբուլատորական, ամբուլատորային:

**A.M.E.** [aɛmø] m. *Հպվ.* Accord monétaire européen, Արժույթի եվրոպական համագործակցություն:

**âme** f. Հոգի. à fendre l'âme, սրտաճմլիկ. âme damnée de, մեկի կամակատար ծառան. être comme une âme en peine, մեծ տրտմության՝ տագնապի մեջ լինել. conservateur dans l'âme, հոգու խորքում պահպանողական. de toute son âme, ամբողջ հոգով. en mon âme et conscience, ձեռքս խղճիս դրած. état d'âme, հոգեվիճակ. rendre l'âme, հոգին ավանդել: // Հոգի, անձ, շունչ, բնակիչ. une âme sœur, հարազատ հոգի. pas âme qui vive, ոչ մի կենդանի շունչ. une

population de cent mille âmes, հարյուր հազար հոգուց բաղկացած ազգաբնակչություն: // *Տեխ.* Փողանցք (d'armes à feu). միջահյուս (de câble): // *Փխբ.* Շունչ ու հոգի (d'une entreprise, de la résistance, de la révolte):

**améliorable** adj. Բարելավելի:

**améliorant, ante** adj. *Բսբ., Գյուղ.* Plante améliorante, բարելավող բույս:

**améliorateur, trice** adj. Բարելավող, բարվոքիչ:

**amélioration** f. Բարելավում, հողաբարելավում, մելիորացիա:

**améliorer** v. tr. (1): Բարելավել, բարվոքել. améliorer sa condition, իր վիճակը բարելավել:
– v. pr. **S'améliorer,** բարելավվել, լավանալ:

**amen!** [amɛn] interj. եղիցի՛, թող լինի՛, ամե՛ն:

**amenage** m. Տեղափոխում: // *Տեխ.* Մատակարարում:

**aménagement** m. Հարմարեցում, կարգավորում (de local). aménagements locatifs, տան սարքավորում: // *Գյուղ.* Նախապատրաստում (de terrain): // *Երկթ.* Հարթեցում (d'une voie): // *Ֆին.* Կարգավորում (des impôts): // *Տեխ.* Մատակարարում, սնուցում (d'une machine):

**aménager** v. tr. (7): Հարմարեցնել, կարգավորել (un local). պլանավորել, պլան կազմել, նախագծել (une ville): // *Գյուղ.* Նախապատրաստել (un terrain): // *Երկթ.* Հարթեցնել (une voie): // *Տեխ.* Մատակարարել, սնել (une machine):

**amendable** adj. Բարեփոխելի, բարեփոխման ենթակա:

**amende** f. Մեղքերն ընդունելը, թողություն խնդրելը. faire amende honorable, հրապարակավ իր մեղքերն ընդունել՝ ներողություն խնդրել: // Տուգանք, տույժ. amende de principe, պայմանական տուգանք. être mis à l'amende, տուգանքի ենթարկվել, տուգանվել. mettre à l'amende, տուգանել:

**amendement** m. Բարեփոխում: // *Իրավ.* Ուղղում, փոփոխություն. déposer un amendement, ուղղում առաջարկել:

**amender** v. tr. (1): Բարեփոխել: // *Գյուղ.* Բարելավել (la terre): // *Իրավ.* Փոփոխություն մտցնել (un projet de loi): // *Փխբ.* Amender sa conduite, իր վարքագիծը վերանայել, ուղղվել:
– v. pr. **S'amender,** դեպի լավը փոխվել (conduite). ուղղվել (personne):

**amène** adj. Սեղմ, հեզ (caractère). հաճելի (lieu):

**amenée** f. Տեղափոխում, փոխանցում, մատակարարում. conduite d'amenée, փոխանցող խողովակ:

**amener** v. tr. (5): Բերել (un animal, qqn). amener à, հասցնել, հանձնել. amener à pied d'œuvre, տեղ (կամ) աշխատանքի տեղը հասցնել: // Անցկացնել (l'eau, le gaz): // *Ծով.* Իջեցնել (une embarcation, les voiles). amener pavillon, դրոշն իջեցնել: // *Իրավ.* Mandat d'amener, ձերբակալման կարգադրություն: // *Փխբ.* Բերել-հասցնել, հանգեցնել (la conversation) [sur]. հասցնել (un dénouement). առաջացնել, ստեղծել, պատճառել (des ennuis). ներկայացնել (un sujet). amener à, հասցնել, մղել (pousser):
– v. pr. **S'amener,** *Խսկց.* Գալ, ժամանել:

**aménité** f. Սիրալիրություն, հաճելիություն: // Pl. Սիրալիր խոսքեր (հեգնական իմաստով):

**amenuisement** m. Փոքրացում, կրճատում. բարակում:

**amenuiser** v. tr. (1): Բարակեցնել: // Պակասեցնել:
– v. pr. **S'amenuiser,** բարակել: // Սրվել (traits):

**amer** [amɛr] m. *Ծով.* Ծովեզրյա կողմնորոշիչ նշան:

**amer, ère** [amɛʀ] adj. Դառը, դառնահամ: // *Փխբ.* Ցավագին, սուր (douleur). դառնագին, դառը (expérience, ironie):
– m. Դառը գարեջուր: // *Կենդբ.* Մաղձ, լեղի:

**amèrement** adv. Դառնորեն:

**américain, aine** adj. Ամերիկյան, ամերիկական:
– s. Ամերիկացի, ամերիկուհի:
– m. Անգլերենի ամերիկյան տարբերակ:

**américanisation** f. Ամերիկանացում:

**américaniser** v. tr. (1): Ամերիկանացնել:

**américanisme** m. Ամերիկաբանություն, ամերիկագիտություն:

**américaniste** s. Ամերիկագետ:

**américium** [ameʀisjɔm] m. *Քիմ.* Ամերիցիում:

**amérindien, ienne** adj. Ամերիկյան հնդիկներին վերաբերող:
– s. Ամերիկյան հնդիկ:

**Amérique** f. *Աշխգր.* Ամերիկա:

**amerlo, amerloque** s. *Ժղ.* Ամերիկացի:

**amerrir** v. intr. (2): *Օդգ.* Ջրի վրա իջնել՝ վայրէջք կատարել:

**amerrissage** m. *Օդգ.* Վայրէջք ջրի վրա:

**amertume** f. Դառնություն: // *Փխբ.* Մաղձ:

**améthiste** f. *Հնք.* Ամեթիստ, մեղեսիկ:

**ameublement** m. Կահավորում, կահավորանք. կահույք, կահկարասի:

**ameublir** v. tr. (2): *Իրավ.* Անշարժ գույքը վերածել շարժականի:

**ameuter** v. tr. (1): *Մարզ.* Միակցել, կապել (des





chiens): // *Փխբ.* Գրգռել (des ennemis). մարդկանց հավաքելով՝ խռովարար գործողությունների մղել (une foule):
– v. pr. **S'ameuter,** ոտքի ելնել, ընդվզել, խռովություն բարձրացնել. s'ameuter autour, խռնվել, հավաքվել, ամբոխվել:

**ami, ie** s. Ընկեր, ընկերուհի, բարեկամ, բարեկամուհի. ami d'enfance, մանկության ընկեր. en ami, ընկերաբար. se faire un ami, ընկեր գտնել: // Սիրած տղա, աղջիկ: // Սիրեկան, սիրուհի: // Հովանավոր. կողմնակից:
– adj. Հարազատ, բարեկամական:

**amiable** adj. Հաշտ, ընկերական. arrangement à l'amiable, հարցի կարգավորում հաշտությամբ՝ կողմերի համաձայնությամբ:

**amiante** m. Ազբեստ, կտավաքար: // **Amiante-ciment,** m. Ազբեստացեմենտ:

**amibe** f. Ամեոբա:

**amibiase** f. *Բժշկ.* Ամեոբիազ:

**amibien, ienne** adj. *Բժշկ.* Ամեոբային:

**amical, ale** adj. Ընկերական, բարեկամական. peu amical, անբարյացակամ, թշնամական:

**amicale** f. Ընկերություն, միություն:

**amicalement** adv. Ընկերաբար, բարեկամաբար:

**amidon** m. Օսլա:

**amidonnage** m. Օսլայում:

**amidonner** v. tr. (1): Օսլայել:

**amincir** v. tr. (2): Բարակեցնել: // Նրբացնել, նիհար ցույց տալ:
– v. intr. Նիհարել, նրբանալ:

**amincissant, ante** adj. Նիհարեցնող, նրբացնող:

**amine** f. *Քիմ.* Ամին:

**aminé, ée** adj. *Քիմ.* Acide aminé, ամինաթթու:

**amiral** m. *Ծով.* Ադմիրալ, ծովակալ. vaisseau amiral, ծովակալանավ:

**amiralat** m. *Ծով.* Ծովակալություն:

**amirale** f. Ծովակալի կին:

**amirauté** f. *Ծով.* Ծովակալություն:

**amitié** f. Ընկերություն, բարեկամություն. se prendre d'amitié pour, ընկերանալ, բարեկամանալ: // Սիրալիրություն, բարեհաճություն. faites-moi l'amitié de, բարի եղեք: // Pl. Ողջույն, բարև. amitiés à tous, բարևներ բոլորին: // Pl. Ուշադրության նշաններ, սիրալիր վերաբերմունք:

**Amman** [am(m)an] *Աշխգր.* Ամման:

**ammoniac** m. *Քիմ.* Ամոնյակ, անուշադր:

**ammoniac, aque** adj. *Քիմ.* Ամոնյակի, անուշադրի:

**ammoniacal, ale** adj. *Քիմ.* Ամոնյակի, անուշադրի:

**ammoniacé, ée** adj. Անուշադրախառն:

**ammoniaque** f. *Քիմ.* Անուշադրասպիրտ:

**ammonite** f. *Կենդբ.* Ամոնիտ, ամոնեղջյուր:

**ammonium** [amɔnjɔm] m. *Քիմ.* Ամոնիում:

**amnésie** f. *Բժշկ.* Ամնեզիա, անհիշություն:

**amnésique** adj. *Բժշկ.* Ամնեզիայով՝ անհիշությամբ տառապող:

**amnistie** f. Ամնիստիա, համաներում. loi d'amnistie, համաներման հրամանագիր:

**amnistier** v. tr. (1): Համաներել:

**amocher** v. tr. (1): *Խսկց.* Վնասել, փչացնել (տե՛ս Abîmer): // *Ժղ.* Հարվածել դեմքին, խփել, ծեծել:

**amodier** v. tr. (1): *Գյուղ.* Վարձակալության տալ:

**amoindrir** v. tr. (2): Քչացնել, պակասեցնել, նվազեցնել: // *Փխբ.* Մեղմացնել, թեթևացնել:
– v. pr **S'amoindrir,** քչանալ, պակասել, նվազել:

**amoindrissement** m. Քչացում, պակասում, նվազում:

**amollir** v. tr. (2): Փափկացնել: // *Փխբ.* Թուլացնել. մեղմացնել:
– v. pr. **S'amollir,** փափկանալ, թուլանալ: // Հալվել:

**amollissant, ante** adj. Փափկացնող: // *Փխբ.* Թուլացնող:

**amollissement** m. Փափկացում: // *Փխբ.* Թուլացում:

**amonceler** v. tr. (8a): Կուտակել, դիզել (տե՛ս Accumuler):
– v.pr. **S'amonceler,** կուտակվել, կիտվել, դիզվել:

**amont** m. Գետի վերնակողմ. en amont, հոսանքին հակառակ, հոսանքն ի վեր. en amont de, վերևում, ակունքին ավելի մոտ:

**amoral, ale** adj. Բարոյազուրկ, բարոյազանց, ամորալ:

**amorçage** m. Լցնելը (d'une pompe): // *Մարզ.* Խայծավորում (à la pêche): // *Ռազմ.* Խանձ (d'une mine). պատրիճավորում (d'un obus): // *Էլ.* Գործարկում: // *Փխբ.* Գայթակղելը, հրապուրելը. սկսելը, ընթացքի մեջ դնելը:

**amorce** f. Լցում (de pompe): // *Մարզ..* Խայծ (de pêcheur): // *Ռազմ.* Խանձ (de fusil): // *Էլ.* Դյուրահալ ապահովիչ: // *Փխբ.* Գայթակղություն. սկիզբ, սկզբնական շրջան:

**amorcer** v. tr. (6): Լցնել (une pompe): // *Մարզ.* Խայծավորել (un poisson, une ligne): // *Ռազմ.* Խանձ դնել (une mine). պատրիճավորել (un obus): // *Էլ.* Գործարկել: // *Փխբ.* Գայթակղել. սկսել, ընթացքի մեջ դնել:

– v. pr. **S'amorcer,** *Տեխ.* Լցվել. գործարկվել: // *Փխբ.* Սկսվել, սկիզբ առնել, ընթացքի մեջ դրվել:
**amorçoir** m. Հորատիչ:
**amorphe** adj. Անձև, ամորֆ: // *Փխբ.* Անդեմ, դիմագուրկ, անկերպարան:
**amorti, ie** adj. Թուլացած, մեղմացած: // *Ծով.* Ծանծաղուտի մեջ խրված:
– m. *Մարզ.* Թուլացած հարված (թենիսում):
**amortir** v. tr. (2): Խլացնել (un bruit, un son). մեղմացնել (un choc). թուլացնել (la lumière). դանդաղեցնել, պակասեցնել (la vitesse). մարել (une dette). դուրս գրել (une installation, du matériel). օտարել (un terrain): // *Բժշկ.* Հանգստացնել, մեղմացնել (la douleur): // *Փխբ.* Թուլացնել, կոտրել (l'ardeur):
– v. pr. **S'amortir,** *Ֆին.* Մարվել, հատուցվել (dette): // *Ֆիզ.* Թուլանալ (oscillations): // *Բժշկ.* Հանգստանալ, մեղմանալ (douleur): // *Փխբ.* Սառչել (passion):
**amortissable** adj. *Ֆին.* Մարման ենթակա:
**amortissement** m. Խլացում (d'un bruit). մեղմացում (d'un choc): // *Էլ.* Թուլացում (des oscillations): // *Ֆին.* Մարում (d'une dette, de la dette publique). օտարում (d'un terrain). fonds (կամ) caisse d'amortissement, մարման կապիտալ:
**amortisseur** m. *Ավտ.* Թափարգել: // *Էլ.* Խլացուցիչ, խլարար:
**Amour** m. *Աշխգր.* Ամուր:
**amour** m. Սեր. amour intéressé, շահադիտական սեր. chagrin d'amour, սիրո տառապանք. l'amour de l'argent, փողասիրություն. mariage d'amour, սիրո վրա հիմնված ամուսնություն: // Սեր, հակում. amour des affaires, բիզնեսի սեր՝ հակում: // Pl. *Արվ.* Սիրո հրեշտակներ, ամուրներ: // Un amour d'enfant, չքնաղ երեխա. un amour de petit sac, սքանչելի փոքրիկ պայուսակ. vous êtes un amour, դուք աննման եք:
– pl. f. Սիրային կապ, սիրային արկածներ. amours déréglées, անկանոն սիրային կապեր: // Սեր, սիրո առարկա, une de mes anciennes amours, իմ նախկին սերերից մեկը. la musique et la peinture, voilà mes seules amours, երաժշտությունն ու նկարչությունն իմ միակ սիրո առարկաներն են: // **Amour-propre,** m. Ինքնասիրություն:
**amouracher** v. tr (1): Սիրահարեցնել:
– v. pr. **S'amouracher,** սիրահարվել, տարվել, հափշտակվել:
**amourette** f. Սիրային կարճատև արկած. պատահեկան սեր:
**amoureuse** f. Սիրած աղջիկ, սիրուհի:
**amoureusement** adv. Սիրահարված, սիրով, սիրահոժար:
**amoureux, euse** adj. Սիրահարված, տարված, հափշտակված. tomber amoureux de, սիրահարվել մեկին: // Սիրային (lettre). սիրահարկոտ (tempérament):
– m. Սիրեկան, սիրած տղա (տե՛ս Béguin, Galant, Soupirant):
– pl. Սիրահարներ:
**amovibilité** f. Հանովի լինելը (d'une chose). հետ վերցնելու ենթակա լինելը (d'un droit). հետ կանչելու ենթակա լինելը (d'un fonctionnaire):
**amovible** adj. Հանովի (chose). հետ վերցնելու ենթակա (droit). հետ կանչելու ենթակա (fonctionnaire):
**ampérage** m. *Էլ.* Էլեկտրական հոսանքի լարում:
**ampère** m. *Էլ.* Ամպեր:
**ampèreheure** m. *Էլ.* Ամպեր-ժամ:
**ampèremètre** m. Ամպերմետր, ամպերաչափ:
**amphi** m. *Խսկց.* Մեծ լսարան:
**amphibie** adj. Երկկենցաղ: // *Ռազմ.* Թե՛ ցամաքում, թե՛ ծովում ընթացող (opération). camion amphibie, ամֆիբիա:
– m. *Կենդբ.* Երկկենցաղ կենդանի: // *Ռազմ., Օդ.* Ամֆիբիա:
**amphibiens** m. Pl. *Կենդբ.* Երկկենցաղներ:
**amphibologie** f. *Քրկն.* Երկիմաստություն, երկդիմություն:
**amphibologique** adj. Երկիմաստ, երկդիմի:
**amphigouri** m. Անհեթեթություն, անմտություն, ցաքուցրիվ՝ անկապ գրվածք:
**amphigourique** adj. Անհեթեթ, անկապ, անհուտակ (style):
**amphithéâtre** m. Ամֆիթատրոն: // Մեծ լսարան:
**amphitryon** m. Հյուրընկալ. ասպնջակ, ասպնջական:
**amphore** f. Սափոր:
**ample** adj. Առատ, լիառատ. ընդարձակ, լայնածավալ: // Լայն, ազատ (habit): // *Loc.* Pour plus ample informé, ավելի մանրամասն տեղեկությունների համար:
**amplement** adv. Առատորեն, լայնորեն:
**ampleur** f. Ընդարձակություն: // Լայնություն: // Ընդգրկում:
**ampli** m. *Էլ., Խսկց.* Ուժեղացուցիչ:
**ampliatif, ive** adj. *Իրավբ.* Պատճենված, կրկնօրինակված:
**ampliation** f. Հաստատված պատճեն՝ կրկնօրինակ. pour ampliation, իսկականի հետ ճիշտ է:
**amplificateur, trice** adj. Ուժգնացնող: // Չափազանցող:





– m. *Էլ.* Ուժեղացուցիչ. amplificateur de tension, լարման ուժեղացուցիչ: // *Տեխ.* Խոշորացուցիչ (de photo):
**amplification** f. Ընդլայնում, ընդարձակում: // *Ֆիզ.* Մեծացում (de radiations): // *Լսնկրչ.* Խոշորացում (d'une photo): // *Ռադիո.* Ուժեղացում: // *Փխբ.* Չափազանցություն:
**amplifier** v. tr. (1): Ընդլայնել, ընդարձակել: // *Ֆիզ.* Մեծացնել (les oscillations): // *Լսնկրչ.* Խոշորացնել (une photo): // *Ռադիո.* Ուժեղացնել: // *Փխբ.* Գեղեցկացնել, զարդարել, չափազանցել:
**amplitude** f. Լայնություն, ընդգրկում, ծավալծություն (de l'espace). mouvement de faible ampliude, սահմանափակ շարժում: // *Ֆիզ., Աստղ.* Ամպլիտուդա:
**ampoule** f. Սրվակ: // *Բժշկ.* Ուռուցք, բշտիկ: // *Էլ.* Էլեկտրալամպ, էլեկտրական լամպ:
**ampoulé, ée** adj. Ուռած (տե՛ս Boursouflé, Enflé). langage ampoulé, փքուն՝ ճոռոմ խոսք:
**amputation** f. *Իրավբ.* Կրճատում, նվազեցում: // *Բժշկ.* Անդամահատում: // *Փխբ.* Կրճատում, համառոտում (dans un texte):
**amputer** v. tr (1): *Բժշկ.* Անդամահատել. il est amputé d'un bras, նա մի թևը չունի, նրա մի թևը կտրել են: // *Իրավբ.* Կրճատել, նվազեցնել: // *Փխբ.* Կրճատել, համառոտել:
**Amsterdam** [amstɛrdam] *Աշխգր.* Ամստերդամ:
**amuïr (s')** v. pr. *Քրկն.* Դադարել արտասանվել, համրանալ:
**amuïssement** m. *Քրկն.* Համրացում (d'un son):
**amulette** f. Թալիսման, հմայիլ, հուռութք:
**amunitionner** v. tr. (1): *Ռազմ.* Սատակարարել:
**amusant, ante** adj. Զվարճալի (տե՛ս Divertissant): // Ծիծաղաշարժ (տե՛ս Comique):
**amuse-gueule** m. pl. *Խհրր.* Աղանդեր, չարազ:
**amusement** m. Զվարճություն, զվարճանք (տե՛ս Distraction): // Զվարճալիք:
**amuser** v. tr. (1): Զվարճացնել: // Ուշադրությունը շեղել:
– v. pr. **S'amuser,** խաղալ (enfants). դատարկ բաներով զբաղվել, ժամավաճառ լինել (jeunes gens). զվարճանալ. pour s'amuser, կատակով: // S'amuser à, իրեն զբաղեցնել, ժամանակ անցկացնել: // S'amuser avec, խաղալ: // S'amuser de, ծաղրել, ձեռք առնել. անկեղծ չլինել, խաբել:
**amusette** f. Խաղալիք, զվարճալիք, ժամանց: // *Խսկց.* Թեթև ժամանց:
**amuseur, amuseuse** s. Զվարճացնող:
**amygdale** f. *Բժշկ.* Նշագեղձ:
**amygdalite** f. *Բժշկ.* Նշագեղձերի բորբոքում:
**amylacée, ée** adj. Օսլա պարունակող:
**amyle** m. *Քիմ.* Ամիլ:
**amylique** adj. *Քիմ.* Ամիլային:
**an** m. Տարի. bon an mal an, միջին հաշվով. elle n'a pas encore vingt ans, նա դեռ քսան տարեկան չկա. il a trente ans, նա երեսուն տարեկան է. par an, տարեկան. un ami de dix ans, տասը տարվա ընկեր. tous les ans, ամեն տարի. tous les deux ans, երկու տարին մեկ:
**ana** m. invar. Ասացվածքների՝ մեջբերումների ժողովածու:
**anabaptiste** s. Կրկնակնունք, անաբապտիստ:
**anabolisme** m. Անաբոլիզմ:
**anacarde** m. *Բսբ.* Բալատուր:
**anacardier** m. *Բսբ.* Բալատրենի:
**anachorète** [anakɔʀɛt] m. Մենակյաց, ճգնավոր:
**anachronique** [anakʀɔnik] adj. Անախրոնիկ, ժամանակավրեպ:
**anachronisme** [anakʀɔnism] m. Անախրոնիզմ, ժամանակավրեպություն:
**anacoluthe** f. *Քրկն.* Անկապակցություն, անհետևողություն:
**anaconda** m. *Կենդբ.* Անակոնդ:
**anaérobie** adj. *Բժշկ.* Անօդակյաց:
– m. *Բժշկ.* Անօդակյաց, անաերոբ (մանրէ):
**anagramme** f. Անդրադառնություն, անագրամա:
**anal, ale** adj. *Բժշկ.* Հետանցքային:
**analectes** m. pl. Հատընտիր, ընտիր հատվածներ:
**analeptique** adj. *Բժշկ.* Կազդուրիչ:
– m. Կազդուրիչ դեղամիջոց՝ սնունդ:
**analgésie** f. *Բժշկ.* Ցավազրկություն:
**analgésique** adj., m. Ցավազրկիչ:
**analogie** f. Համանմանություն, համաբանություն, նմանակություն, անալոգիա:
**analogique** adj. Համանման, համաբանական, նմանակային:
**analogiquement** adv. Համանման ձևով:
**analogue** adj. Համանման, միանման:
– m. Նմանակ:
**analphabète** adj., s. Անգրագետ:
**analphabétisme** m. Անգրագիտություն:
**analysable** adj. Վերլուծության ենթակա, վերլուծելի:
**analyse** f. Վերլուծություն: // *Քրկն.* Analyse grammaticale, քերականական վերլուծություն: // *Էլ., Ֆիզ.* Անալիզ, տարրալուծում. analyse électrolytique, էլեկտրալուծում, էլեկտրոլիզ. analyse spectrale, սպեկտրային անալիզ, սպեկտրանալիզ: // *Փխբ.* L'esprit d'analyse,

վերլուծական միտք. en dernière analyse, վերջին հաշվով:

**analyser** v. tr. (1): Վերլուծել, վերլուծության ենթարկել. տարրալուծել, անալիզի ենթարկել:

**analyste** s. *Քիմ.* Քիմիկոս-լաբորանտ: // *Փիլ.* Վերլուծող, անալիտիկ:

**analytique** adj. Անալիտիկ, վերլուծական:

**ananas** [anana, as] m. *Բսբ.* Արքայախնձոր, անանաս:

**anapeste** m. *Գրկն.* Անապեստ:

**anaphore** m. *Քրկն.* Յարակրկնություն, անաֆորա:

**anaphorique** adj. Յարակրկնական:

**anaphylactique** adj. *Բժշկ.* Գերզգայուն:

**anaphylaxie** f. *Բժշկ.* Գերզգայնություն:

**anar** s. *Խսկց.* Անարխիստ:

**anarchie** f. Անարխիա, անիշխանություն:

**anarchique** adj. Անարխիստական:

**anarchiquement** adv. Անարխիստաբար:

**anarchisme** m. Անարխիզմ:

**anarchiste** adj. Անարխիստական:

– s. Անարխիստ:

**anarcho-** [anaʀko-] préf. Անարխո-: // **Anarcho-syndicalisme**, m. Անարխոսինդիկալիզմ: // **Anarcho-syndicaliste**, s. Անարխոսինդիկալիստ. adj. Անարխոսինդիկալիստական:

**anastigmatique** adj. *Ֆիզ.* Ոչ աստիգմատիկ:

**anastomose** f. *Բժշկ.*, *Բսբ.* Բերանակցություն:

**anastrophe** f. *Գրկն.* Յակադասություն:

**anathématiser** v. tr. (1): *Եկեղ.* Նզովել:

**anathème** m. *Եկեղ.* Նզովք, բանադրանք (excommunication): // *Խսկց.* Անեծք:

– adj. Նզովյալ:

**anatomie** f. *Բժշկ.* Անատոմիա, կազմախոսություն. pièce d'anatomie, կազմախոսական պատրաստուկ: // *Խսկց.* Կազմվածք, մարմին:

**anatomique** adj. *Բժշկ.* Կազմախոսական:

**anatomiquement** adv. Կազմախոսապես:

**anatomiser** v. tr. (1): *Բժշկ.* Դիահատել:

**anatomiste** s. *Բժշկ.* Կազմախոս, անատոմ:

**ancestral, ale** adj. Նախնի, նախնիների, հինավուրց:

**ancêtre** s. Նախահայր, նախամայր: // Pl. Նախնիներ: // *Փխբ.* Նախահայր:

**anche** m. *Երժշտ.* Լեզվակ:

**anchois** m. *Կենդբ.* Անձրուկ, անչոուս:

**ancien, ienne** adj. Յին, վաղեմի. Pline l'ancien, Պլինոս երեց: // Նախկին: // *Ռազմ.* Ancien combattant, պատերազմի վետերան:

– m. Ավագ, վետերան: // Pl. Նախնադարյան ժողովուրդներ. անտիկ գրողներ:

**anciennement** adv. Նախկինում, առաջներում:

**ancienneté** f. Յնություն: // Աշխատանքային ստաժ, ավագություն. à l'ancienneté, ըստ ստաժի:

**ancillaire** [ɑ̃sillɛʀ] adj. Սպասավորական. amour ancillaire, սիրային կապ սպասուհու հետ:

**ancolie** f. *Բսբ.* Ջրընկալ:

**ancrage** m. *Ծով.* Խարսխակայան. խարիսխ գցելը: // *Ճրտրպ.* Ամրացում, պնդացում, պահանգակապ:

**ancre** f. *Ծով.* Խարիսխ. jeter, mouiller l'ancre, խարիսխ գցել. lever l'ancre, խարիսխը բարձրացնել: // *Ճրտրպ.* Պահանգ, խարիսխ: // *Տեխ.* Խարիսխ (d'horlogerie): // *Փխբ.* Փրկության խարիսխ, վերջին հույս:

**ancrer** v. tr. (1): *Ծով.* Խարսխել, խարիսխ գցել: // *Ճրտրպ.* Ամրացնել, պահանգակցել: // *Փխբ.* Ancré dans, արմատ գցած, խարսխված:

– v. pr. **S'ancrer,** *Ծով.* Խարսխվել: // *Փխբ.* Խարսխվել, հիմնավորվել, հիմնվել, հաստատվել, արմատ գցել:

**ancrure** f. *Ծով.* Խարիսխ: // *Ճրտրպ.* Պահանգ, խարիսխ:

**andain** m. *Գտնտ.* Յնձաշերտ, հնձած խոտի՝ հացահատիկի փռվածք:

**andalou, ouse** adj. Անդալուզյան:

– s. Անդալուզացի, Անդալուզիայի բնակիչ:

**Andes** f.pl. *Աշխգր.* Անդեր, Անդյան լեռներ:

**andin, ine** adj. Անդյան, Անդերին վերաբերող:

**Andorre** f. *Աշխգր.* Անդորրա:

**andouille** f. *Խհրր.* Խոզի երշիկ (խոզի փորոտիքից պատրաստված): // *Ժղ.* Ապուշ՝ անճարակ մարդ:

**andouiller** m. Բողկուկ, եղջյուրի գլուխ (du cerf):

**andouillette** f. *Խհրր.* Բարակ երշիկ (փորոտիքից):

**androgène** adj. *Բժշկ.* Անդրոգեն, սեռահասունացնող:

– m. *Բժշկ.* Սեռահասունացնող հորմոն:

**androgyne** adj. *Բժշկ.* Երկսեռ:

– s. Այրակին (տե՛ս Hermaphrodite):

**androïde** m. Մարդակերպ:

**âne** m. Ավանակ, էշ (տե՛ս Baudet, Bourricot). վայրի էշ, իշավայրի, ցիռ (sauvage). promenade à âne, էշով զբոսանք: // Chaussée en dos d'âne, խորդուբորդ խճուղի: // *Փխբ.* Յիմար, ապուշ, էշ:

**anéantir** v. tr. (2): Վերացնել, ոչնչացնել, բնաջնջել: // Ի չիք դարձնել: // Սաստիկ ընկճել, սպանել. ապշեցնել: // *Իրավբ.* Չեղյալ համարել (un contrat). վերացնել (un droit): // *Խսկց.*





Ուժասպառ անել. je suis anéanti, ջարդված եմ, էլ ուժ չունեմ:

– v. pr. **S'anéantir,** ոչնչանալ, բնաջնջվել: // *Փխբ.* Սաստիկ ընկճվել, հուսահատվել:

**anéantissement** m. Ոչնչացում, բնաջնջում: // *Փխբ.* Ուժասպառություն. ընկճվածություն, հուսահատություն. ինքնանվաստացում. խոնարհություն:

**anecdote** f. Միջադեպ, հետաքրքիր պատմություն, մանրավեպ:

**anecdotier** s. Պատմություն անող:

**anecdotique** adj. Անեկդոտային:

**ânée** f. Իշաբեռ:

**anémie** f. *Բժշկ.* Սակավարյունություն, անեմիա:

**anémié, ée** adj. *Բժշկ.* Սակավարյունությամբ տառապող:

**anémier** v. tr. (1): Սակավարյունություն առաջացնել: // *Փխբ.* Ուժասպառ անել, թուլացնել:

– v. pr. **S'anémier,** սակավարյունություն ստանալ: // *Փխբ.* Թուլանալ:

**anémique** adj. *Բժշկ.* Սակավարյունությամբ տառապող, սակավարյունությանը հատուկ:

**anémomètre** m. Յողմաչափ:

**anémone** f. *Բսբ.* Յողմածաղիկ, ծափկոտրուկ, անեմոն: // *Կենդբ.* Ակտինիա, ծովային անեմոն:

**ânerie** f. Էշություն, հիմարություն, ապուշություն: // Անհեթեթություն, անմտություն:

**anéroïde** adj., m. *Ֆիզ.* Աներոիդ:

**ânesse** f. *Կենդբ.* Էգ ավանակ:

**anesthésiant, ante** adj., m. *Բժշկ.* Անզգայացուցիչ:

**anesthésie** f. *Բժշկ.* Անզգայացում:

**anesthésier** v. tr. (1): *Բժշկ.* Անզգայացնել:

**anesthésique** adj., m. *Բժշկ.* Անզգայացուցիչ:

**anesthésiste** s. *Բժշկ.* Անզգայացնող բժիշկ:

**anévrisme** m. *Բժշկ.* Անևրիզմ:

**anfractuosité** f. Անհարթություն, խորդուբորդություն: // *Բժշկ.* Pl. Ուղեղագալարներ (du cerveau):

**ange** m. *Եկեղ.* Յրեշտակ. ange gardien, պահապան հրեշտակ: // *Loc.* Etre aux anges, յոթերորդ երկնքում՝ երանության մեջ լինել. faiseuse d'anges, աբորտներ անող կին. le mauvais ange de qqn, մեկի չար ոգին. rire aux anges, անհիմաստ ժպտալ: // *Խսկց.* Mon ange, հոգյակս:

**angélique** adj. Յրեշտակային:

– f. *Բսբ.*, *Խհրր.* Բոխնի, հրեշտակաբույս, անգեղիկ:

**angéliquement** adv. Յրեշտակի նման, հրեշտակաբար:

**angélisme** m. Ոչ այս աշխարհից լինելը:

**angelot** m. Յրեշտակիկ: // *Արվ.* Քերովբե:

**angélus** m. *Եկեղ.* Առավոտյան աղոթք (Յրեշտակ Տեառն): // Առավոտյան ժամահարություն (Զանգակն հրեշտակի):

**angevin, ine** adj. Անժեի, Անժուի:

– s. Անժեի՝ Անժուի բնակիչ:

**angine** f. *Բժշկ.* Կոկորդացավ, անգինա. angine de poitrine, կրծքի հեղձուկ, կրծքահեղձուկ:

**angineux, euse** adj. *Բժշկ.* Անգինային, կրծքահեղձուկին վերաբերող:

**angiographie** f. *Բժշկ.* Անոթագրություն:

**angiologie** f. *Բժշկ.* Անոթաբանություն:

**angiosperme** f. *Բսբ.* Ծածկասերմ, անգիասպերմ:

**anglais, aise** adj. Բրիտանական (armée). անգլիական (peuple):

– m. Անգլիացի: // Անգլերեն. mauvais anglais, կոտրտված անգլերեն:

– f. Անգլուհի: // Pl. Երկար խոպոպներ (boucles): // Դեպի առաջ շեղությամբ ձեռագիր: // *Խսկց.* Filer à l'anglaise, աննկատ՝ առանց հրաժեշտ տալու հեռանալ:

**angle** m. Անկյուն. angle de la rue, փողոցի անկյուն, angle visuel, տեսանկյուն: // *Մաթ.* Անկյուն. angle droit, ուղիղ անկյուն: // *Օդգ.* Angle d'assiette, d'attaque, հավասարակշռության, գրոհի անկյուն. angle de bombardement, de planement, ռմբակոծելու, ճախրասավառնելու անկյուն: // *Փխբ.* Տեսակետ, տեսանկյուն. arrondir les angles, սուր իրավիճակները հարթել՝ մեղմացնել:

**Angleterre** f. *Աշխգր.* Անգլիա:

**anglican, ane** adj. *Եկեղ.* Անգլիկանական (dogme). l'Eglise anglicane, անգլիկան եկեղեցի:

– s. *Եկեղ.* Անգլիադավան:

**anglicanisme** m. Անգլիկան եկեղեցու դավանություն, անգլիկանիզմ:

**anglicisant, ante** s. Անգլիագետ:

**anglicisme** m. Անգլիաբանություն:

**angliciste** s. Անգլիագետ, անգլերենի մասնագետ:

**anglo** préf. Անգլո-: // **Anglo-catholique,** adj. *Եկեղ.* Անգլոկաթոլիկ: // **Anglo-Normand, e,** adj. Անգլո-նորմանդական. les îles Anglo-Normandes, Նորմանդական կղզիներ: // **Anglo-Saxon, onne,** adj. Անգլո-սաքսոնական. s. Անգլո-սաքսոն:

**anglomanie** f. Անգլիամոլություն:

**anglophile** adj., s. Անգլիասեր:

**anglophilie** f. Անգլիասիրություն:

**anglophobe** adj., s. Անգլիատյաց:

**anglophobie** f. Անգլիատյացություն:

**anglophone** adj., s. Անգլիախոս:

**angoissant, ante** adj. Տագնապալի, անձկալի:

**angoisse** f. Սրտնեղություն, հոգեկան տագնապ, անձկություն: // *Բժշկ.* Տագնապ. angoisse de la mort, մահատագնապ: // *Loc.* Poire d'angoisse, գելոց:

**angoissé, ée** adj. Տագնապահար, անձկահույզ:

**angoisser** v. tr. (1): Տագնապ՝ անձուկ առաջացնել:

**Angola** m. *Աշխգր.* Անգոլա:

**angora** adj. *Կենդբ.*, *Առևտր.* Անգորական:
– m. Անգորյան կատու. անգորական բուրդ, անգորա:

**angstrœm** [ɑ̃gsʀøm, aŋstʀœm] m. *Ֆիզ.* Անգստրոմ:

**anguiforme** adj. Օձաձև:

**anguille** f. *Կենդբ.* Օձաձուկ: // *Loc.* Fuyant comme une anguille, անորսալի. il y a anguille sous roche, այստեղ մի բան կա:

**anguillère** f. Օձաձկների բուծարան:

**angulaire** adj. Անկյունային. pierre angulaire, անկյունաքար:

**anguleux, euse** adj. Անկյունավոր: // *Փխբ.* Դժվար, ծանր (caractère): // *Խսկց.* Մռայլ (personne). կոպիտ (traits):

**anharmonique** adj. *Մաթ.* Ոչ ներդաշնակ, աններդաշնակ:

**anhéler** v. intr. (5): Ծանր շնչել, հևալ, շնչասպառ լինել:

**anhydre** adj. *Քիմ.* Անջուր, ջրազուրկ:

**anhydride** m. *Քիմ.* Անհիդրիդ. anhydride carbonique, sulfureux, sulfurique, ածխածնի դիօքսիդ (երկօքսիդ), ծծմբի եռօքսիդ:

**anicroche** f. Արգելք, խոչընդոտ. se passer sans anicroche, անարգել անցնել:

**ânier, ière** s. Իշավար, իշապան:

**aniline** f. *Քիմ.* Անիլին:

**animal** m. *Կենդբ.* Անասուն, կենդանի (տե՛ս Bête): // *Խսկց.* Անասուն, ախմախ:

**animal, ale** adj. Կենդանական: // Անասնական:

**animalcule** m. *Կենդբ.* Մանրէ:

**animalier** m. *Արվ.* Անիմալիստ:

**animaliser** v. tr. (1): Անասնականացնել:

**animalité** f. Անասնականություն:

**animateur, trice** adj. Ոգեշնչող, ոգևորող, խթանող:
– s. Որևէ հաղորդում՝ ներկայացում վարող. խմբակի՝ ակումբի ղեկավար:

**animation** f. Աշխուժություն, կենդանություն: // Իրարանցում: // Ոգևորություն: // Մուլտիպլիկացիա: // Խմբակի՝ ակումբի ղեկավարում:

**animé, ée** adj. Շնչավոր, կենդանի: // Աշխույժ, ոգևորված (discussion): // *Կինո.* Dessins animés, մուլտֆիլմ:

**animer** v. tr. (1): Աշխուժացնել, կենդանացնել, կյանք տալ: // Ոգևորել: // Գրգռել:
– v. pr. **S'animer,** կենդանանալ, աշխուժանալ, ոգևորվել, բոցավառվել:

**animisme** m. *Փիլ.* Ոգեպաշտություն, անիմիզմ:

**animosité** f. Քեն, ոխ, թշնամանք:

**anion** m. *Քիմ.*, *Էլ.* Անիոն:

**anis** m. *Բսբ.* Անիսոն:

**aniser** v. tr. (1): Անիսոնել:

**anisette** f. Անիսօղի:

**anisotrope** adj. *Ֆիզ.* Անիզոտրոպ, անիզոտրոպային:

**anisotropie** f. *Ֆիզ.* Անիզոտրոպիա:

**Ankara** *Աշխգր.* Անկարա:

**ankylose** f. *Բժշկ.* Հոդակարծրացում:

**ankylosé, ée** adj. Ընդարմացած, թմրած: // *Բժշկ.* Կարծրացած, փայտացած:

**ankyloser** v. tr. (1): *Բժշկ.* Կարծրացնել (հոդը). ընդարմացնել, թմրեցնել:
– v. pr. **S'ankyloser,** կարծրանալ, ընդարմանալ, թմրել:

**annales** f. pl. Տարեգրություն:

**annaliste** s. Տարեգիր:

**Annam** [anam] m. *Աշխգր.* Աննամ:

**annamite** adj. Աննամական:
– s. Աննամցի, Աննամի բնակիչ՝ բնակչուհի:
– m. Աննամերեն, վիետնամերեն:

**anneau** m. Մատանի: // Օղակ:

**année** f. Տարի. l'année prochaine, գալիք տարի. l'année suivante, հաջորդ տարին. souhaiter la bonne année à qqn, մեկի նոր տարին շնորհավորել. tout le long de l'année, ամբողջ տարվա ընթացքում: // Etudiant de première, seconde année, առաջին, երկրորդ կուրսի ուսանող: // **Année-lumière** կամ **de lumière,** f. Լուսային տարի, լուսատարի:

**annelé, ée** adj. *Ճրտրպ.* Օղակազարդ: // *Կենդբ.* Օղակավոր:

**annélides** m. pl. *Կենդբ.* Օղակավոր որդեր:

**annexe** f. Հարակից շինություն, թևաշենք: // Կից գրություն, ներդիր, հավելված. lettre annexe, ուղեկցող նամակ: // *Իրավբ.* Լրացում (à un projet de loi): *Բժշկ.* Հարակից մասեր (d'un organe):
– adj. Հավելյալ, հարակից:

**annexer** v. tr. (1): Բռնակցել (un pays): // Կցել (un document):

**annexion** f. Բռնակցում, անեքսիա:







**annexionnisme** m. Զավթողական քաղաքականություն:

**annexionniste** adj. Զավթողական:
– s. Զավթողական քաղաքականության կողմնակից:

**annihilable** adj. Ոչնչացման՝ վերացման ենթակա: // *Իրավբ.* Չեղյալ հայտարարելու ենթակա:

**annihilation** f. Ոչնչացում, վերացում:

**annhilier** v. tr. (1): Ոչնչացնել, վերացնել (տե՛ս Détruire): // *Իրավբ.* Չեղյալ հայտարարել:

**anniversaire** adj. Տարեդարձային, տարեդարձի:
– m. Տարեդարձ. ծննդյան օր, ծննդյան տարեդարձ:

**annonce** f. Հայտարարություն: // *Իրավբ.* Ծանուցում. annonce de mariage, ամուսնական հայտարարություն: // *Առևտր.* Գովազդ: // *Փխբ.* Նախանշան:

**annoncer** v. tr. (6): Հայտարարել, հայտնել, ծանուցել. նախանշել. քարոզել. նախագուշակել. հրապարակել: // Գովազդ անել: // Զեկուցել, հայտնել (այցելուի մասին). se faire annoncer, իր գալը հայտնել տալ:
– v. pr. **S'annoncer,** ներկայանալ: // Նշաններ ցույց տալ. cela s'annonce bien, բոլոր նշանները կան, որ ամեն ինչ լավ պիտի լինի:

**annonceur** m. *Առևտր.* Ռեկլամատու: // *Ռադիո.* Հաղորդավար:

**annonciateur, trice** s. Նախագուշակ. ազդանշան:
– adj. Նախագուշական, նախագուշակող, նախազգուշացնող:

**annonciation** f. *Եկեղ.* Ավետում:

**annoncier** m. Գովազդ ստեղծող, գովազդագիտակ:

**annotateur, trice** s. Ծանոթագրող:

**annotation** f. Ծանոթագրություն, անոտացիա (տե՛ս Note):

**annoter** v. tr (1): Ծանոթագրել, նշումներ անել:

**annuaire** m. Տարեգիրք, տեղեկագիրք. annuaire du téléphone, հեռախոսագիրք:

**annualité** f. Ամենամյա բնույթ:

**annuel, elle** adj. Տարեկան, ամենամյա. միամյա:

**annuellement** adv. Տարեկան, ամեն տարի:

**annuité** f. Ամենամյա մուծում, տարեվճար:

**annulable** adj. *Իրավբ.* Անվավեր՝ չեղյալ հայտարարելու ենթակա:

**annulaire** adj. Օղակաձև, օղաձև:
– m. *Բժշկ.* Մատանեմատ:

**annulation** f. Չեղյալ՝ անվավեր հայտարարելը:

**annuler** v. tr (1): Չեղյալ՝ անվավեր հայտարարել:
– v. pr. **S'annuler,** միմյանց չեզոքացնել:

**anobli, ie** adj. Ազնվականացած:
– s. Ազնվականի տիտղոս ստացած անձ:

**anoblir** v. tr. (2): Ազնվական դարձնել: // Ազնվացնել:

**anoblissement** m. Ազնվականացում: // Ազնվացում:

**anode** f. *Էլ.* Անոդ:

**anodin, ine** adj. Անվնաս, անվտանգ:
– m. *Բժշկ.* Ցավազրկիչ միջոց:

**anodique** adj. *Էլ.* Անոդային:

**anodiser** v. tr. (1): *Տեխ.* Անոդացնել:

**anomal, ale** adj. Անկանոն, նորմայից շեղված:

**anomalie** f. Անկանոնություն, նորմայից շեղում, անոմալիա:

**ânon** m. *Կենդբ.* Իշուկ: // *Խսկց.* Բթամիտ, ապուշ:

**anone** f. *Բսբ.* Քրթի, եզնասիրտ:

**ânonnement** m. Կմկմալով՝ ծամծմելով՝ դանդաղ կարդալը՝ խոսելը:

**ânonner** v. tr. (1): Կմկմալով՝ ծամծմելով՝ դանդաղ կարդալ. ânonner sa leçon, դասը կմկմալ:
– v. intr. Ծամծմել, դանդաղ խոսել:

**anonymat** m. Անանունություն. garder l'anonymat, անհայտ մնալ:

**anonyme** adj. Անստորագիր (lettre, ouvrage). անանուն: // *Իրավբ.* Société anonyme, սահմանափակ պատասխանատվությամբ ընկերություն:
– m. Անանուն՝ անհայտ անձ: // Անհայտ հեղինակ:

**anonymement** m. Անանուն ձևով:

**anophèle** m. *Կենդբ.* Անոֆելես:

**anorak** m. Մարզական վերնազգեստ:

**anordir** v. intr. (2): Դեպի հյուսիս ուղղել:

**anorexie** f. *Բժշկ.* Անախորժակություն:

**anormal, ale** adj. Աննորմալ:
– s. *Բժշկ.* Աննորմալ՝ հոգեպես խանգարված անձ:

**anormalement** adv. Ոչ նորմալ՝ ոչ բնական ձևով:

**A.N.P.E.** [aɛnpeø] f. *Հպվ.* Agence nationale pour l'emploi, Զբաղվածության ազգային գործակալություն:

**anse** f. Կանթ, ունկ. հանգույց, օղակ: // *Բժշկ.* Գալար (de l'intestin): // *Աշխգր.* Փոքրիկ ծովախորշ: // *Loc.* Faire danser l'anse du panier, գնումներ անելիս տիրոջը խաբել (ծառայի մասին):

**antagonique** adj. Հակամարտ:
**antagonisme** m. Հակամարտություն:
**antagoniste** adj. Հակամարտ, անտագոնիստական:
– s. Հակամարտիկ, անտագոնիստ:
**antalgique** adj. *Բժշկ.* Ցավազրկիչ:
– m. *Բժշկ.* Ցավազրկիչ միջոց:
**antan (d')** adj. Անցյալ տարվա. հին ժամանակների:
**Antarctique** f. *Աշխգր.* Անտարկտիդա:
**antarctique** adj. Անտարկտիկական:
**antebois** m. *Ճրտրպ.* Շրիշակ, պլինթուս:
**antécédent, ente** adj. Նախորդող, նախադաս, առաջադաս. նախկին:
– m. Նախորդ: // Նախընթաց դեպք, նախապարագա: // *Քրկն.* Հարաբերյալ: // *Բժշկ.* Հիվանդության հետ կապված և նրան նախորդող փաստեր: // Pl. Անցյալ՝ նախորդ գործեր՝ գործունեություն:
**antéchrist** m. Նեռ, սուտ Քրիստոս, Հակաքրիստոս:
**antédiluvien, ienne** adj. Նախաջրհեղեղյան:
**antenne** f. *Կենդբ.* Բեղիկ, շոշափուկ: // *Ծով.* Թեքափայտ, առագաստակալ: // *Ռադիո.* Անտենա, ալեհավաք: // *Փխբ.* Personne qui a des antennes, զգայուն՝ դյուրազգաց անձնավորություն: // **Antenne-parapluie,** f. *Ռադիո.* Արբանյակային (սկավառակաձև) ալեհավաք:
**antépénultième** adj. *Քրկն.* Նախավերջընթեր:
– f. *Քրկն.* Նախավերջընթեր վանկ:
**antéposé, ée** adj. *Քրկն.* Առաջադաս, նախադաս, նախադիր:
**antérieur, eure** adj. Նախկին: // Նախորդող (à): // *Բժշկ.* Membre antérieur, առաջնային վերջույթ: // *Քրկն.* Առաջնալեզվային:
**antérieurement** adv. Նախապես, նախօրոք: // Ավելի վաղ, ավելի առաջ (à):
**antériorité** f. Նախորդում:
**anthère** f. *Բսբ.* Փոշանոթ:
**anthologie** f. Հատընտիր, ծաղկաքաղ, անթոլոգիա:
**anthozoaires** m. pl. *Կենդբ.* Մարջանազգիներ:
**anthracène** m. *Քիմ.* Անթրացեն:
**anthracite** m. Անթրացիտ:
**anthrax** m. *Բժշկ.* Թարախապալար, կայծուռուցք, չիբան:
**anthropocentrisme** m. *Փիլ.* Մարդակենտրոնություն:
**anthropoïde** adj. *Կենդբ.* Մարդանման:
– m. Մարդանման կապիկ:
**anthropologie** f. Մարդաբանություն, անթրոպոլոգիա:
**anthropologue, anthropologiste** s. Մարդաբան:
**anthropométrie** f. Մարդաչափություն, անթրոպոմետրիա:
**anthropométrique** adj. Մարդաչափական:
**anthropomorphe** adj. Մարդակերպ:
– m. Մարդանման կապիկ:
**anthopomorphisme** m. Մարդակերպություն, մարդաձևություն, անթրոպոֆորիզմ:
**anthroponymie** f. Անձնանունաբանություն, անձնանվանաբանություն:
**anthropophage** adj. Մարդակեր, մարդակերական:
– m. Մարդակեր:
**anthopophagie** f. Մարդակերություն:
**anthropopithèque** m. Բրածո մարդ:
**antiaérien, ienne** adj. Հակաօդային. feu antiaérien, զենիթային հրետակրակ:
**antialcoolique** [ɑ̃tialkɔlik] adj. Հակաալկոհոլային:
– s. Գինեժուժկալ՝ չխմող մարդ:
**antialcoolisme** [ɑ̃tialkɔlism] m. Գինեժուժկալություն:
**antiatomique** adj. *Ֆիզ.* Հակաատոմային:
**antiaveuglant, ante** adj. *Բժշկ.* Հակաշլացուցիչ:
**antibiotique** m. Հակաբիոտիկ, անտիբիոտիկ:
**antibrouillard** m. invar. Հակամառախուղային սարք:
**antibruit** adj. invar. Անձայնանցիկ:
**anticancéreux, euse** adj. *Բժշկ.* Sérum anticancéreux, հակաքաղցկեղային շիճուկ:
**anticathode** f. Անտիկատոդ:
**antichambre** f. Նախասենյակ. faire antichambre chez, երկար ընդունելության սպասել:
**antichar** adj. Հակատանկային:
**anticipation** f. Կանխում. par anticipation, կանխավ, նախօրոք, վաղօրոք: // Կանխատեսում, կանխագուշակում: // *Իրավբ.* Պարտավորության վաղաժամկետ կատարում. կանխավճար:
**anticipé, ée** adj. Նախօրոք՝ ժամանակից շուտ արված. versement anticipé, կանխավճար:
**anticiper** v. intr. (1): Կանխել, կանխագործել. կանխավճար կատարել (sur):
– v. tr. Կանխել. կանխագուշակել (l'avenir). կանխատեսել (une difficulté):
**anticlérical, ale** adj. Հակակղերական:
**anticléricalisme** m. Հակակղերականություն:
**anticoagulant, ante** adj., m. *Բժշկ.* Հակամակարդիչ:
**anticolonialisme** m. Պայքար գաղութարարության դեմ:





**anticolonialiste** s. Գաղութարարության դեմ պայքարող:
**anticommunisme** m. Հակակոմունիզմ:
**anticonceptionnel, elle** adj. Հակաբեղմնավորիչ:
**anticonformiste** adj. Հակակոնֆորմիստական:
– s. Հակակոնֆորմիստ:
**anticonstitutionnel, elle** adj. Հակասահմանադրական:
**anticorps** m. *Բժշկ.* Հակամարմին:
**anticyclone** m. Հակացիկլոն, անտիցիկլոն:
**antidater** v. tr. (1): Հետին թվով թվագրել:
**antidémocratique** adj. Հակաժողովրդավարական:
**antidérapant, ante** adj. *Ավտ.* Տեղապտտումը կանխող:
– m. *Ավտ.* Ձմեռային անվադող:
**antidétonant, ante** adj. Հակաճայթիչ, հակադետոնատոր:
**antidiphtérique** adj. *Բժշկ.* Հակադիֆտերիտային (sérum, piqûre):
**antidoping** [ɑ̃tidɔpiŋ], **antidopage** adj. invar. *Մարզ.* Հակադոպինգային (test, mesures, loi):
**antidote** m. *Բժշկ.* Հակաթույն (à, de):
**antiéconomique** adj. Հակատնտեսական:
**antiémétique** adj., m. Հակափսխեցուցիչ:
**antienne** f. *Եկեղ.* Եկեղեցական երգ: // *Փխբ.* Chanter toujours la même antienne, միշտ նույն երգը երգել:
**antiesclavagiste** adj. Հակաստրկատիրական:
– s. Ստրկատիրության դեմ պայքարող:
**antifébrile** adj., m. Հակաջերմ:
**antifongique** adj. *Կենդբ., Բժշկ.* Հակասնկային:
**antifriction** f. *Տեխ.* Հակաշփական համաձուլվածք:
**antigang** [ɑ̃tigɑ̃g] adj. invar. Brigade antigang, կազմակերպված հանցավորության դեմ պայքարի ջոկատ:
– m. Կազմակերպված հանցավորության դեմ պայքարի ջոկատ:
**antigel** m. *Ավտ.* Անտիֆրիզ:
**antigène** m. *Բժշկ.* Անտիգեն:
**antigivre** m. *Ավտ.* Հակասառցապատիչ:
**antigouvernemental, ale** adj. Հակակառավարական:
**antigrippal, ale** adj. *Բժշկ.* Հակագրիպային:
**antihéros** m. Հակահերոս:
**antihistaminique** m. *Բժշկ.* Հակահիստամինային:
**antihygiénique** adj. Հակասանիտարական, հակահիգիենիկ:
**anti-inflationniste** adj. *Ֆին.* Հակաինֆլյացիոն, հակասղաճային:
**antilibéral, ale** adj. Հակալիբերալ:
**antillais, aise** adj. Անտիլյան:
– s. Անտիլյան կղզիների բնակիչ:
**Antilles** f. pl. *Աշխգր.* Անտիլյան կղզիներ. mer des Antilles, Կարիբյան ծով:
**antilogarithme** m. *Մաթ.* Հակալոգարիթմ:
**antilogie** f. *Քրկն.* Հակառակաբանություն:
**antilope** f. *Կենդբ.* Քարայծ:
**antimagnétique** adj. Հակամագնիսային:
**antimatière** f. *Ֆիզ.* Հականյութ:
**antimilitarisme** m. Հակամիլիտարիզմ:
**antimilitariste** s. Հակամիլիտարիստ:
**antimissile** adj. *Ռազմ.* Հակահրթիռային:
**antimite** m. Ցեցերից պաշտպանող միջոց:
**antimoine** m. *Քիմ.* Ծարիր, ծարրաքար:
**antimonarchiste** adj., s. Հակամիապետական:
**antinational, ale** adj. Հակազգային:
**antinévralgique** adj. *Բժշկ.* Հականյարդախտային, հականևրալգիական:
**antinomie** f. Հակօրինություն, հակասություն, անտինոմիա:
**antinomique** adj. Հակօրինական, անտինոմիական:
**antinucléaire** adj. Հակամիջուկային:
– s. Միջուկային էներգիայի օգտագործման հակառակորդ:
**antipape** m. Հակապապ:
**antiparasite** m. *Ռադիո.* Հակախափանումային սարք:
**antiparasiter** v. tr. (1): *Ռադիո.* Հակախափանել:
**antiparlementaire** adj., s. Հակախորհրդարանական:
**antiparlementarisme** m. Հակախորհրդարանականություն:
**antiparticule** f. *Ֆիզ.* Հակամասնիկ:
**antipathie** f. Հակակրանք (contre):
**antipathique** adj. Հակակրելի (à):
**antipatriotique** adj. Հակահայրենասիրական:
**antipéristaltique** adj. *Բժշկ.* Հակապերիստալտիկ:
**antipersonnel, elle** adj. *Ռազմ.* Հակահետևակային:
**antiphlogistique** adj. *Բժշկ.* Հակաբորբոքային:
**antiphonaire** m. *Եկեղ.* Կցրդարան:
**antiphrase** f. *Քրկն.* Հակաբանություն, հակաբերություն:
**antipode** m. *Աշխգր.* Հակոտնյա: // *Փխբ.* Հակոտնյա, հակապատկեր:

**antipoison** adj. invar. Centre antipoison, թունավորման դեպքերի շտապ օգնության կենտրոն:
**antipoliomyélitique** adj. *Բժշկ.* Հակապոլիոմիելիտային:
**antiprohibitionniste** adj., s. Ալկոհոլային խմիչքների արգելման հակառակորդ:
**antiprotectionniste** adj., s. Հակահովանավորչական:
**antiproton** m. *Էլ.* Հակապրոտոն:
**antipsychiatrie** f. *Հոգբ.* Հոգեբուժության դասական մեթոդների ժխտում:
**antipyrétique** adj. *Բժշկ.* Հակատենդային:
**antipyrine** f. *Բժշկ.* Անտիպիրին:
**antiquaille** f. Հնություն: // Pl. Հինումին՝ արժեք չունեցող իրեր, հնոտի:
**antiquaire** s. *Առևտր.* Հնահավաք, անտիկվար: // *Հնգ.* Հնագետ, հնագիտակ:
**antique** adj. Հնամենի, հին, անտիկ (տե՛ս Ancien):
– m. Հնություն:
**antiquité** f. Հին ժամանակներ. հնություն. անտիկ աշխարհ: // Pl. Հնություններ. magasin d'antiquités, հնությունների խանութ:
**antirachitique** adj. Հակառախիտային:
– m. Հակառախիտային միջոց:
**antiraciste** adj. Հակառասիստական:
– s. Հակառասիստ, ռասիզմի հակառակորդ:
**antiradar** adj. *Ռազմ.* Հակառադարային:
**antirationnel, elle** adj. Հակատրամաբանական:
**antireflet** adj. invar. *Ֆիզ.* Հակաարտացոլային:
**antireligieux, euse** adj. Հակակրոնական:
**antirépublicain, aine** adj., s. Հակահանրապետական:
**antirévolutionnaire** adj., s. Հակահեղափոխական:
**antirides** adj. Հակակնճռային:
– m. invar. Հակակնճռային միջոց:
**antirouille** m. Հակաժանգային միջոց:
**antiségrégationniste** adj., s. Ռասայական սեգրեգացիայի հակառակորդ:
**antisémite** adj. Հակահրեական:
– s. Հրեատյաց, անտիսեմիտ:
**antisémitisme** m. Հրեատեցություն, անտիսեմիտիզմ:
**antisepsie** f. *Բժշկ.* Հականեխում, հականեխություն, անտիսեպտիկա:
**antiseptique** adj., m. *Բժշկ.* Հականեխիչ:
**antisérum** m. *Բժշկ.* Հակաշիճուկ:
**antisocial, ale** adj. Հակահասարակական:
**antispasmodique** adj. Հակաջղաձգական:
– m. Հակաջղաձգական միջոց:
**antisportif, ive** adj. Հակամարզական, մարզական կանոնների հակասող:
**antistatique** adj. Անտիստատիկ:
**antitank** adj. invar. *Ռազմ.* Հակատանկային:
– m. Հակատանկ:
**antitétanique** adj. *Բժշկ.* Հակապրկախտային:
**antithèse** f. *Քրկն.* Հակադրույթ, հակաթեզիս: // *Փխբ.* Հակադրություն, կոնտրաստ:
**antithétique** adj. Հակադրական:
**antitoxine** f. *Բժշկ.* Հակաթույն, հակատոքսին:
**antitoxique** adj. *Բժշկ.* Հակատոքսիկ:
**antitrust** [ɑ̃titʀœst] adj. invar. *Ֆին.* Հակամոնոպոլիստական:
**antituberculeux, euse** adj. Հակաթոքախտային:
**antitype** m. Հակատիպ, հակատիպար, հակապատկեր:
**antivariolique** adj. *Բժշկ.* Ծաղիկ հիվանդության դեմ (vaccin, piqûre):
**antivénéneux, euse** adj. Հակաթունավոր, հակաթունային:
**antivenimeux, euse** adj. *Բժշկ.* Խայթոցի թույնը չեզոքացնող:
**antivirus** m. *Բժշկ.* Հակավիրուս:
**antivol** adj. invar. Գողությունը կանխող (chaîne):
**antonomase** f. Վերանվանում:
**antonyme** m. *Քրկն.* Հականուն, հականիշ:
**antonymie** f. *Քրկն.* Հականունություն, հականիշություն:
**antre** m. Այր, քարայր, քարանձավ: // Որջ (d'un lion): // *Բժշկ.* Խոռոչ: // *Խսկց.* Մեկուսարան:
**anucléaire** adj. Միջուկազերծ:
**anurie** f. *Բժշկ.* Անմիզություն:
**anus** m. *Բժշկ.* Հետանցք:
**Anvers** *Աշխգր.* Անտվերպեն:
**anxiété** f. Անձուկ, անձկություն, սրտնեղություն, տագնապ. avec anxiété, անձկորեն, տագնապով:
**anxieusement** adv. Անձկորեն, տագնապով:
**anxieux, euse** adj. Տագնապալի, անհանգիստ: // Տագնապահար, անհանգստացած: // Անհամբերությամբ սպասող, փափագող (de):
**anxiogène** adj. Տագնապահարույց:
**aoriste** m. *Քրկն.* Աորիստ:
**aorte** f. *Բժշկ.* Աորտա, մայր շնչերակ:
**aortique** adj. *Բժշկ.* Աորտային:
**août** [u, ut] m. Օգոստոս:





**aoûtien, ienne** [ausjɛ̃, jɛn] s. Օգոստոսին արձակուրդի գնացող:
**apache** s. Հնդկացի: // Ապաշ, ստահակ, խուլիգան:
**apaisant, ante** adj. Հանդարտեցնող, խաղաղեցնող, մեղմացնող:
**apaisement** m. Հանդարտեցում, խաղաղեցում, մեղմացում: // *Փխբ.* Pl. Հանգստացնող խոստումներ:
**apaiser** v. tr. (1): Բարկությունը հանդարտեցնել, գթասրտությունը շարժել (une divinité). խաղաղեցնել, հանդարտեցնել, մեղմացնել (զգղ). հագեցնել (la faim, la soif): // Հանդարտեցնել (la tempête). ճնշել (une révolte): // Հանգստացնել (la conscience). մեղմացնել, թեթևացնել (la douleur):
– v. pr. **S'apaiser,** խաղաղվել, հանգստանալ, մեղմանալ:
**apanage** m. Վիճակված բախտ, արտոնություն:
**aparté** m. *Թատր.* Առանձին խոսք. en aparté, մեկուսի, առանձին: // *Խսկց.* Առանձին խոսակցություն:
**apartheid** [apaʀtɛd] m. Ռասայական խտրականություն՝ մեկուսացում:
**apathie** f. Անտարբերություն, հուլություն, ապատիա:
**apathique** adj. Անտարբեր, հույլ, ապատիկ:
**apatride** adj. Անհայրենիք:
– s. Վտարանդի. քաղաքացիություն չունեցող անձ:
**A.P.E.C.** [apeøse] m. *Հպվ.* Asia Pacific Economic Cooperation (*անգլ.*), Ասիական-խաղաղօվկիանոսյան տնտեսական համագործակցություն:
**Apennins** m. pl. *Աշխգր.* Ապենինյան լեռներ:
**aperception** f. *Փիլ.* Գիտակցական ընբռնում, ապերցեպցիա:
**apercevable** adj. Նկատելի, նշմարելի, տեսանելի:
**apercevoir** v. tr. (3): Նշմարել, նկատել, տեսնել:
– v. pr. **S'apercevoir,** նկատել, հասկանալ, գիտակցել. sans s'en apercevoir, անգիտակցաբար, անզգուշորեն:
**aperçu** m. Համառոտ տեսություն, ակնարկ, համառոտ շարադրանք: // Կարծիք, տեսակետ, գնահատական:
**apéritif, ive** adj. Ախորժակ բացող:
– m. Ապերիտիվ, ճաշից առաջ մատուցվող խմիչք:
**apéro** m. *Խսկց.* Խմիչք (տե՛ս Apéritif):
**aperture** f. *Քրկն.* Բացվածք:
**apesanteur** f. Անկշռություն:
**apétale** adj. *Բսբ.* Անթերթ:
**à-peu-près** m. Մոտավորություն, մոտավոր թիվ:
**apeuré, ée** adj. Վախեցած: // Երկչոտ (animal):
**apex** [apɛks] m. invar. *Աստղ.* Ապեքս:
**aphasie** f. *Բժշկ.* Անխոսություն, աֆազիա:
**aphasique** adj. *Բժշկ.* Անխոս, խոսելու ունակությունը կորցրած:
– s. *Բժշկ.* Խոսելու ունակությունը կորցրած հիվանդ:
**aphélie** f. *Աստղ.* Հեռակետ:
**aphérèse** f. *Քրկն.* Սկզբնահնչյունի՝ սկզբնավանկի անկում:
**aphidiens** m. pl. *Կենդբ.* Բույսոջիլներ:
**aphlogistique** adj. Հրադիմացկուն, կրակադիմացկուն:
**aphone** adj. *Բժշկ.* Անձայն, ձայնը կորցրած:
**aphonie** f. *Բժշկ.* Անձայնություն, ձայնի կորուստ:
**aphorisme** m. Աֆորիզմ, իմաստախոսք:
**aphrodisiaque** adj. Հեշտահարույց, ցանկահարույց:
– m. Հեշտահարույց միջոց:
**aphte** m. *Բժշկ.* Կաթնախտ. կեղ (բերանում, քթի մեջ):
**aphteux, euse** adj. Կեղալից. fièvre aphteuse, դաբաղ:
**api** m. *Գտնտ.* Pomme d'api, մանր կարմիր խնձոր:
**à-pic** m. invar. Զառիթափ:
**apical, ale** adj. *Բժշկ.*, *Քրկն.* Լեզվածայրային:
– f. *Քրկն.* Լեզվածայրային բաղաձայն:
**apicole** adj. Մեղվաբուծական:
**apiculteur, trice** s. *Գտնտ.* Մեղվաբույծ:
**apidés** m. pl. *Կենդբ.* Մեղվազգիներ:
**apiquer** v. tr. (1): *Ծով.* Բարձրացնել (առագաստափայտը):
**apitoiement** m. Խղճահարություն, կարեկցանք:
**apitoyant, ante** adj. Խղճալի, ողորմելի: // Կարեկցանք առաջացնող:
**apitoyer** v. tr. (9a): Գութը շարժել, կարեկցանք առաջացնել:
– v. pr. **S'apitoyer,** խղճահարվել, կարեկցել:
**aplanir** v. tr. (2): Հարթեցնել:
– v. pr. **S'aplanir,** հարթվել:
**aplanissement** m. Հարթեցում, հարթելը:
**aplat** m. *Արվ.* Միագույն հարթ ներկում:
**aplati, ie** adj. Տափակած, տափակ:
**aplatir** v. tr. (2): Տափակեցնել, հարթեցնել: // *Խսկց.* Տրորել, ճզմել (զգղ):
– v. pr. **S'aplatir,** փուքը իջնել: // Գետնին փռվել, տարածվել, ճզմվել: // *Փխբ.* Ստորա-

նալ, սողալ. s'aplatir devant qqn, ստորանալ մեկի առջև:
**aplatissement** m. Հարթեցում, տափակացում, ճզմում: // *Փխբ.* Ստորացում (devant):
**aplatissoir** m. *Տեխ.* Տափակիչ հաստոց, գլանահաստոց:
**aplomb** m. Հավասարակշռություն. ուղղաձիգություն, կանգնվածք (d'un chevel). à l'aplomb de, ուղղահայաց. d'aplomb, ուղղաձիգ, ուղղահայաց, հաստատուն. hors d'aplomb, անկայուն, անհաստատ: // *Խսկց.* Ինքնավստահություն (տե՛ս Assurance). համարձակություն, հանդգնություն (տե՛ս Toupet). qui a de l'aplomb, ինքնավստահ. remettre d'aplomb, ոտքի կանգնեցնել, ուժերը վերականգնել:
**apnée** f. *Բժշկ.* Շնչադադար:
**apocalypse** f. *Եկեղ.* Հայտնություն. Գիրք Հայտնության: // Աշխարհի վերջ:
**apocalyptique** adj. Հայտնությանը վերաբերող: // Աշխարհի վերջը պատկերող: // *Փխբ.* Մթապատ. խորհրդանշական (style):
**apocope** f. *Քրկն.* Վերջնահնչյունի՝ վերջնավանկի անկում:
**apocryphe** adj. Անստույգ, անվավեր: // *Փխբ.* Կեղծված, խարդախված (document):
– m. *Եկեղ.* Ապոկրիֆ, պարականոն՝ անվավեր աստվածաշնչական գիրք:
**apode** adj., m. *Կենդբ.* Անոտնյա:
**apodictique** adj. *Փիլ.* Համոզիչ, անվիճելի:
**apogée** m. *Աստղ.* Հեռակետ: // *Փխբ.* Գագաթնակետ:
**apolitique** adj. Ապաքաղաքական:
**apolitisme** m. Ապաքաղաքականություն, ապոլիտիզմ:
**Apollon** m. Ապոլլոն (աստված): // *Փխբ.* Ապոլլոն:
**apologétique** adj. Ջատագովական:
– f. Ջատագովություն:
**apologie** f. Պաշտպանողական խոսք. ջատագովություն. faire l'apologie, գովաբանել, պաշտպանել:
**apologiste** s. Ջատագով, պաշտպան:
**apologue** m. Առակ, խրատական այլաբանություն:
**aponévrose** f. *Բժշկ.* Մկանապատակ, մկանապատյան, մկանաձիգ:
**apophonie** f. *Քրկն.* Ձայնավորների հերթագայություն, ձայնդարձ:
**apophtegme** m. Ափորիզմ, իմաստախոսք:
**apophyse** f. *Բժշկ.* Արտաճոն:
**apoplectique** adj. *Բժշկ.* Կաթվածային, կաթվածի ենթակա:
– m. *Բժշկ.* Կաթվածահար:
**apoplexie** f. *Բժշկ.* Կաթված:
**apostasie** f. *Եկեղ.* Ուրացություն, ուխտազանցություն:
**apostasier** v. intr. (1): *Եկեղ.* Հավատն ուրանալ:
**apostat** adj., s. *Եկեղ.* Ուրացող:
**a posteriori** adv. Հետփորձական, ապոստերիորի:
**apostille** f. Նշում. հանձնարարական գրություն:
**apostiller** v. tr. (1): *Իրավք.* Հանձնարարական գրություն ավելացնել:
**apostolat** m. *Եկեղ.* Առաքելություն:
**apostrophe** f. Դիմում, դիմելը (խոսողի, հռետորի): // Կտրուկ դիտողություն:
**apostrophe** f. *Քրկն.* Ապաթարց:
**apostropher** v. tr. (1): Կտրուկ՝ անքաղաքավարի խոսել մեկի հետ:
**apothème** m. *Մաթ.* Հարթագիծ, ապոթեմա:
**apothéose** f. Ապոթեոզ, աստվածացում: // Մեծարում: // *Թատր.* Վերջին պատկեր:
**apothicaire** m. *Բժշկ.* Դեղագործ: // *Loc.* Compte d'apothicaire, ուռճացրած հաշիվ:
**apôtre** m. *Եկեղ.* Առաքյալ: // *Փխբ.* Ջատագով, պաշտպան. faire le bon apôtre, իրեն սուրբ ձևացնել:
**Appalaches** f. pl. *Աշխգր.* Ապալաշներ, Ապալաշյան լեռներ:
**apparaître** v. intr. (74): Երևալ, հայտնվել: // *Փխբ.* Երևան գալ, ի հայտ գալ, բացահայտվել:
**apparat** m. Հանդիսավորություն, շքեղություն. d'apparat, հանդիսական, տոնական:
**apparatchik** m. Ապարատչիկ:
**apparaux** m. pl. *Ծով.* Նավասարք, նավահանդերձանք:
**appareil** m. Շքեղություն. պատրաստություն. հանդերձանք. dans le plus simple appareil, մերկ: // *Տեխ.* Ապարատ, սարք, սարքավորում, մեքենա, գործիք. appareils électroménagers, տնտեսական էլեկտրասարքեր. appareil frigorifique, photographique, սառնարան, լուսանկարչական ապարատ: // *Էլ.* Ռադիոընդունիչ (de radio). հեռախոսի ապարատ. qui est à l'appareil ?, ո՞վ է խոսում: // *Օդգ.* Օդանավ. appareil d'oxigène, թթվածնասարք: // *Բժշկ.* Appareil digestif, մարսողական ապարատ. appareil chirurgical, վիրաբուժական սարքավորում. appareil prothétique, պրոտեզ, փոխադիր. appareil respiratoire, շնչառական ապարատ. շնչազտող: // *Ճրտրպ.* Շարվածք (des pierres):
**appareillage** m. Նախապատրաստություն, սարքավորում: // Սարք, սարքավորում: // Նավի՝ ծով դուրս գալու նախապատրաստություն:





**appareiller** v. tr. (1): Նախապատրաստել. տաշել, շարել (des pierres): // *Ծով.* Պատրաստել, սարքավորել:
– v. intr. *Ծով.* Բաց ծով դուրս գալ:
**appareiller** v. tr (1): Զուգավորել. համապատասխանեցնել:
**apparemment** adv. Ըստ երևույթին:
**apparence** f. Տեսք, կերպարանք, արտաքին. sous l'apparence de, մեկի տեսքն ընդունած, մեկի տեսքով. en apparence, առերևույթ. contre toute apparence. հակառակ ամեն հավանականության. juger d'après les apparences, դատել ըստ արտաքին տեսքի. se fier aux apparences, հավատ ընծայել արտաքին տեսքին. sauver les apparences, դրությունը փրկել:
**apparent, ente** adj. Տեսանելի, երևացող: // Ակնհայտ, առերևույթ, թվացյալ. prétexte apparent, կեղծ պատրվակ:
**apparentement** m. Միություն, դաշնակցություն (ընտրությունների ժամանակ, քաղաքականության մեջ):
**apparenter** v. tr. (1): Բարեկամացնել, խնամի դարձնել:
– v. pr. **S'apparenter,** խնամիանալ (à):
**appariement** m. Զուգավորում, զույգի ընտրություն:
**apparier** v. tr. (1): Զուգավորել. զույգ ընտրել:
– v. pr. **S'apparier,** զուգավորվել:
**appariteur** m. Բարապան: // Պարետ:
**apparition** f. Երևույթ, տեսիլք, ուրվական: // Հայտնվելը, երևալը. faire une apparition, հայտնվել, երևալ: // Հրատարակություն, լույս ընծայում (d'un livre):
**appartement** m. Բնակարան:
**appartenance** f. Պատկանելություն:
**appartenant, ante** adj. Պատկանող (à):
**appartenir** v. intr. (100): Պատկանել: // Պատշաճ լինել, պատշաճել, վայել լինել. il lui appartient de, նրան վայել է:
– v. pr. **S'appartenir,** իր գլխի տերը լինել, անկախ լինել:
**appas** m. pl. Հմայք, թովչանք. կուրծք (d'une femme): // Գայթակղություն, հրապուրանք:
**appât** m. Խայծ, գայթակղություն. appât corrupteur, կաշառք:
**appâter** v. tr. (1): Խայծով գրավել (le poisson). չաղացնել (les oies): // *Խսկց.* Հրապուրել, գայթակղել (qqn) [տե՛ս Amorcer]:
**appauvrir** v. tr. (2): Աղքատացնել (une langue, qqn, un terrain): // *Բժշկ.* Սակավացնել, նոսրացնել (le sang). հյուծել:
– v. pr. **S'appauvrir,** աղքատանալ: // *Բժշկ.* Այլասերվել (race). Նոսրանալ, սակավանալ (sang):
**appauvrissement** m. Աղքատացում (d'une langue, d'une personne, d'un terrain): // *Բժշկ.* Այլասերում (d'une race). Նոսրացում, սակավացում (du sang). հյուծում, քայքայում (de la santé):
**appeau** m. Սուլակ, երգակ (թռչնի ձայնը նմանակող գործիք): // *Փխբ.* Servir d'appeau à qqn, մեկին խայծ ծառայել. se laisser prendre à l'appeau, խաբվել, գայթակղվել:
**appel** m. Կանչ. appel à la prière, աղոթականչ. appel au secours, օգնության կանչելը. appel téléphonique, հեռախոսազանգ, հեռախոսականչ: // Կոչ. appel au calme, հանգիստ մնալու կոչ. faire appel à, կոչ անել, դիմել: // *Ռազմ.* Անվանակոչ, անվանականչ. battre l'appel, շարք կանգնելու կանչել. faire l'appel, անունն առ անուն կանչել. feuille d'appel, զորակոչի ծանուցագիր. manquer à l'appel, անվանականչից բացակայել: // *Առևտր.* Appel de fonds, միջոցների ներգրավում: // *Իրավք.* Վերաքննիչ գանգատ, վերաքննություն. cour d'appel, վերաքննիչ դատարան. sans appel, գանգատարկման (բողոքարկման) ոչ ենթակա (jugement): // *Տեխ.* Appel d'air, օդի ներհոս:
**appelant, ante** adj. *Իրավք.* Բողոքարկող:
– s. *Իրավք.* Բողոքարկու, գանգատաբեր:
– m. Երգակ (տե՛ս Appeau):
**appelé** m. *Ռազմ.* Զորակոչիկ: // *Իրավք.* Երկրորդ ժառանգորդ: // *Եկեղ.* Il y a beaucoup d'appelés, mais peu d'élus, շատերն են կանչված, բայց քչերին են ընտրել:
**appeler** v. tr. (8): Կանչել, կոչ անել, հրավիրել. appeler un taxi, տաքսի կանչել. appeler au travail, աշխատելու հրավիրել. appeler qqn au secours, մեկին օգնության կանչել. appeler le médecin, բժիշկ կանչել. appeler au téléphone, հեռախոսի մոտ կանչել: // Անվանել, կոչել, դիմել (տե՛ս Nommer). on l'a appelé Marguerite, նրան Մարգարիտ կոչեցին. il l'a appelé imbécile, նա նրան հիմար անվանեց. il l'appelé M. X., նա նրան դիմեց որպես պ-ն X: // Նշանակել, կոչել. appelé au commandement, հրամանատար լինելու կոչված. appelé à la notoriété, հռչակավոր դառնալու համար նախասահմանված: // Կանչել, պահանջել. les affaires m'appellent à Bordeaux, գործերն ինձ Բորդո են կանչում. appeler un châtiment, պատիժ պահանջել. l'heure m'appelle, գնալուս ժամն է: // Հրավիրել, բերել, գրավել. on a

**artificiel, elle** adj. Արհեստական, կեղծ:

**artificiellement** adv. Արհեստականորեն:

**artificier** m. Հրավառիչ: // *Ռազմ.* Պայթեցնող:

**artificieusement** adv. Խորամանկությամբ, նենգությամբ:

**artificieux, euse** adj. Խորամանկ, նենգ:

**artillerie** f. *Ռազմ.* Հրետանի, հրետազոր. հրետանագիտություն. artillerie de campagne, de montagne, դաշտային, լեռնային հրետանի:

**artilleur** m. *Ռազմ.* Հրետանավոր:

**artimon** m. *Ծով.* Խելակայմ:

**artisan, ane** s. Արհեստավոր: // *Փխբ.* Ճարտարապետ, ստեղծարար. artisan de son sort, իր բախտի տնօրեն:

**artisanal, ale** adj. Տնայնագործական. bombe artisanal, ձեռքի պատրաստած ռումբ:

**artisanalement** adv. Տնայնագործական եղանակով:

**artisanat** m. Արհեստ: // Արհեստավորություն:

**artiste** s. Վարպետ. artiste capillaire, վարսահարդար: // *Թատր.* Դերասան: // *Արվ., Երժշտ.* Արտիստ, արվեստագետ:
– adj. Արտիստական, արտիստային:

**artistement** adv. Արվեստով, ճարտարությամբ, գեղարվեստորեն:

**artistique** adj. Արտիստական, գեղարվեստական, արվեստագիտական:

**artistiquement** adv. Արվեստով, գեղարվեստականորեն:

**arum** [aʀɔm] m. *Բսբ.* Նվիկ:

**aruspice** m. Ընդերահմա:

**aryen, enne** adj. Արիական:
– s. Արիացի:

**arythmie** f. *Բժշկ.* Սրտի անկանոն զարկ, ռիթմախախնգար:

**arythmique** adj. Անկանոն՝ անհավասար տրոփող:

**as** [as] m. Աս (կշռի և դրամի միավոր հին Հռոմում): // Մեկանոց, տուզ (թղթախաղում). as de pique, ագռավի մեկանոց: // *Օդգ.* Աս: // *Մարզ.* Վարպետ: // *Փխբ.* Աս, տուզ: // *Խսկց.* Fichu comme l'as de pique, վատ հագնված (մարդ), վատ կատարված (աշխատանք). passer à l'as, թռցնել, խաբեությամբ յուրացնել. il est plein aux as, փողի տոպրակ է:

**asbeste** m. Ազբեստ:

**ascaris** [askaʀis] m. *Բժշկ.* Ասկարիդ:

**ascendance** f. Նախնիք: // *Աստղգ.* Բարձրացում, վերելք:

**ascendant, ante** adj. Բարձրացող: // *Մաթ.* Աճող:
– m. Ազդեցություն, իշխանություն (տե՛ս Influence). prendre de l'ascendant sur, հեղինակություն՝ ազդեցություն ձեռք բերել: // *Աստղգ.* Ելնելը, բարձրանալը: // Pl. Նախնիներ:

**ascenseur** m. Վերելակ. maison sans ascenseur, առանց վերելակի տուն:

**ascension** f. Բարձրացում, վերելք. faire l'ascension de, բարձրանալ, մագլցել: // *Օդգ.* Բարձրություն վերցնելը: // *Աստղգ.* Ելնելը, բարձրանալը: // *Եկեղ.* Համբարձում:

**ascensionnel, elle** adj. Վերամբարձ (force). դեպի վեր ուղղված, վերասլաց (mouvement):

**ascentionniste** s. Ալպինիստ, լեռնագնաց:

**ascèse** f. Ճգնավորություն:

**ascète** s. Ճգնավոր, ասկետ:

**ascétique** adj. Ճգնավորական:

**ascétisme** m. Ճգնավորություն:

**ascorbique** adj. *Բժշկ.* Acide ascorbique, ասկորբինաթթու:

**asdic** m. *Ծով.* Ջրալոկատոր:

**asepsie** f. *Բժշկ.* Հականեխություն:

**aseptique** adj. Հականեխական, ստերիլ:
– m. Հականեխական միջոց:

**aseptisation** f. Հականեխում, ստերիլացում:

**aseptiser** v. tr. (1): Հականեխել, ստերիլացնել:

**asexué, ée** adj. Անսեռ:

**Asiate** s. Ասիացի:

**asiatique** adj. Ասիական:
– s. Ասիացի:

**Asie** f. *Աշխգր.* Ասիա. l'Asie Mineure, Փոքր Ասիա:

**asile** m. Ապաստան, ապաստարան, օթևան. asile d'aliénés, հոգեբուժական հիվանդանոց, գժանոց. asile des indigents, աղքատանոց. asile de nuit, գիշերօթևան. asile des vieillards, ծերանոց. droit d'asile, ապաստարանի անձեռնմխելիության իրավունք. sans asile, անտուն, անօթևան, անապաստան: // *Փխբ.* Պաշտպանություն, ապաստան:

**asine** adj. f. *Կենդբ.* Bête asine, էշ:

**asocial, ale** adj. Հակահասարակական, հասարակության հետ չմերվող:

**asparagus** [aspaʀagys] m. *Բսբ.* Ծնեբեկ:

**aspect** m. Տեսիլ, տեսարան. au premier aspect, առաջին հայացքից: // Տեսք, կերպարանք (տե՛ս Apparence). changer d'aspect, կերպարանափոխվել. d'un aspect singulier, տարօրինակ տեսքով. d'aspect tranquille, առերևույթ հանգիստ: // Կողմ. prendre un fâcheux aspect, վատ ընթացք ստանալ. sous tous ses aspects, բոլոր տեսանկյուններից. sous un autre aspect, այլ տեսանկյունից: // *Քրկն.* Կերպ:





**asperge** f. *Բսբ.* Ծնեբեկ: // *Խսկց.* Լողլող անձնավորություն:

**asperger** v. tr. (7): Ցողել, ցանել, շաղել (de):

**aspérité** f. Անհարթություն, խորդուբորդություն: // *Փխբ.* Անհարթություն. անմշակություն, չմշակվածություն:

**aspersion** f. Ցողելը, ցանելը, շաղելը:

**aspersoir** m. Ցանիչ. ցնցուղի գլխիկ:

**asphaltage** m. Ասֆալտապատում:

**asphalte** m. Ասֆալտ (տե՛ս Bitume). // Մայթ:

**asphalter** v. tr. (1): Ասֆալտապատել:

**asphaltier** m. Ասֆալտապատող:

**asphodèle** m. *Բսբ.* Թաղաղու:

**asphyxiant, ante** adj. Հեղձուցիչ: // Թունավոր (գազ):

**asphyxie** f. *Բժշկ.* Շնչահեղձություն:

**asphyxier** v. tr. (1): Շնչահեղձություն առաջացնել, գազով թունավորել:
– v. pr. **S'asphyxier,** շնչահեղձ լինել, գազից թունավորվել:

**aspic** m. *Կենդբ.* Քարբ, ասպիդ: // *Բսբ.* Նարդոս: // *Խհրր.* Դոնդող (մսից կամ ձկից պատրաստված):

**aspirant, ante** adj. Օդածիգ. pompe aspirante, օդածիգ ջրհան, օդապոմպ:
– s. Թեկնածու (որևէ պաշտոնի) [տե՛ս Candidat]: // *Ծով.* Ծովային ենթասպա:

**aspirateur, trice** adj. Ներծծող:
– m. Փոշեծծիչ, փոշեկուլ: // *Տեխ.* Օդածծիչ:

**aspiration** f. *Քրկն.* Ներշնչում: // *Տեխ.* Ներծծում. aspiration d'air, օդի ներծծում. clapet d'aspiration, օդածծիչ փական: // *Քրկն.* Շնչեղացում: // *Փխբ.* Ձգտում (à):

**aspiré, ée** adj. *Քրկն.* Շնչեղ:

**aspirer** v. intr. (1): *Բժշկ.* Ներշնչել (տե՛ս Inspirer): // *Փխբ.* Ձգտել (à). aspirer à la députation, նպատակադրվել պատգամավոր դառնալ:
– v. tr. Ներշնչել, շնչել (de l'air). ներծծել (un liquide): // *Քրկն.* Շնչեղացնել. ne pas aspirer les *h*, *h*-երը չարտասանել:

**aspirine** f. *Բժշկ.* Ասպիրին. un comprimé d'aspirine, ասպիրինի հաբ:

**assagir** v. tr. (2): Զգաստացնել, սթափեցնել:
– v. pr. **S'assagir,** սթափվել, զգաստանալ, խոհեմանալ:

**assagissement** m. Խոհեմացում, սթափեցում:

**assaillant, ante** adj. Հարձակվող:
– s. Հարձակվող, նախահարձակ (տե՛ս Agresseur):

**assaillir** v. tr. (17): Հարձակվել, պաշարել: // *Փխբ.* Պատել, համակել (craintes). տեղալ (de) [reproches, questions]:

**assainir** v. tr. (2): Առողջարար դարձնել, առողջացնել. վարակազերծել, ախտահանել (տե՛ս Désinfecter, Purifier): // *Գտնտ.* Չորացնել, ցամաքեցնել (le terrain): // *Փխբ.* Զտել, մաքրել, բարեփոխել:
– v. pr. **S'assainir,** ավելի առողջարար դառնալ:

**assainissement** m. Առողջարար դարձնելը, վարակազերծում, ախտահանում (տե՛ս Désinfection, Purification): // Չորացում, ցամաքեցում: // *Ֆին.* Առողջացում, կայունացում (des finances): // *Փխբ.* Բարեփոխում, վերակառուցում:

**assaisonnement** m. *Խհրր.* Համեմելը, համեմունք: // *Փխբ.* Աղ, համ ու հոտ:

**assaisonner** v. tr. (1): *Խհրր.* Համեմել: // *Փխբ.* Համ ու հոտ տալ, համեմել:

**assassin, ine** adj. Սպանիչ, մահացու:
– m. Մարդասպան. femme assassin, մարդասպան կին:

**assassinat** m. Մարդասպանություն, դիտավորյալ սպանություն. assassinat légal, օրինականացված մարդասպանություն:

**assassiner** v. tr. (1): Սպանել: // *Խսկց.* Սպանել, ձանձրացնել. հոգի(ն) հանել, տանջել:

**assaut** m. *Ռազմ.* Հարձակում, գրոհ. donner l'assaut, հարձակվել, գրոհել. monter à l'assaut, հարձակման՝ գրոհի անցնել. enlever d'assaut, գրոհով առնել՝ գրավել. repousser un assaut, գրոհը հետ մղել: // *Մարզ.* Մարտ, հանդիպում, մրցություն. assaut de boxe, բռնցքամարտի մրցություն. faire assaut avec qqn, մեկի հետ սուսերամարտել: // *Փխբ.* Գրոհ (des vagues). faire assaut d'amabilités avec qqn, մեկի հետ սիրալիրությամբ մրցել. faire assaut d'esprit, սրամտությամբ մրցել:

**assèchement** m. Չորացում, ցամաքեցում (տե՛ս Drainage):

**assécher** v. tr. (5): Չորացնել, ցամաքեցնել (տե՛ս Drainer):

**assemblage** m. Հավաքում, հավաքելը, ժողովում, ժողովելը: // Հավաքույթ, միավորում: // *Տեխ.* Հավաքում, միացում. tige d'assemblage, կապակցող ձող:

**assemblée** f. Ժողով, ասամբլեա. Assemblée générale, Գլխավոր ասամբլեա. Assemblée

nationale, Ազգային ժողով: // Հավաքույթ: // *Եկեղ.* Assemblée des fidèles, միաբանություն, ծխական համայնքի անդամներ:

**assembler** v. tr. (1): Հավաքել, ժողովել: // *Իրավբ.* Հրավիրել, գումարել: // *Տեխ.* Հավաքել, մոնտաժել, միացնել:
– v. pr. **S'assembler,** հավաքվել, ժողովվել (տե՛ս Attrouper [s']): // *Տեխ.* Հավաքվել, միացվել:

**assembleur** m. Հավաքող, ժողովող: // *Տեխ.* Մոնտյոր, մեխանիկ. տետրիչ, բրոշյուրիչ:

**assener** v. tr. (5): Assener un coup, հարված հասցնել. bien assené, ուժեղ (coup):

**assentiment** m. Համաձայնություն, հավանություն (տե՛ս Acquiescement). donner son assentiment à, իր համաձայնությունը տալ:

**asseoir** v. tr. (18): Նստեցնել: // Գցել (un camp). խփել (une tente). դնել (des fondations). տեղադրել: // *Ֆին.* Դնել (un impôt): // *Փխբ.* Հիմնել, ստեղծել (une opinion). տարածել (sa réputation): // *Ժղ.* Շփոթեցնել:
– v. pr. **S'asseoir,** նստել. asseyez-vous, նստեք: // Նստել, իջնել, խորանալ հողի մեջ (maison): // *Օդգ.* Ուղիղ իջնել:

**assermenté, ée** adj. Երդում տված (fonctionnaire, prêtre, témoin):

**assermenter** v. tr. (1): Երդվեցնել:

**assertion** f. Հաստատում:

**asservi, ie** adj. Ստրկացած, ստրկաբարո:

**asservir** v. tr. (2): Ստրկացնել, գերի դարձնել (à) [*ուղղ. և փխբ.*]: // *Փխբ.* Ենթարկել, ճնշել (տե՛ս Opprimer):
– v. pr. **S'asservir,** ստրկանալ, ենթարկվել (à):

**asservissant, ante** adj. Ստրկացուցիչ, ստրկական:

**asservissement** m. Ստրկություն, ստրկացում (տե՛ս Servitude): // *Փխբ.* Հպատակեցում, ենթարկում:

**assesseur** m. *Իրավբ.* Դատական ատենակալ, դատարանի անդամ:

**assez** adv. Բավականին, բավականաչափ. assez grand, vite, բավականին մեծ, արագ. il dort bien assez, նա բավականաչափ է քնում. elle parle assez bien le français, նա բավականին լավ է խոսում ֆրանսերեն: // Assez de, բավականաչափ. j'ai assez d'argent, ես բավականաչափ փող ունեմ. il a assez de mille euros, հազար եվրոն նրա համար բավական է. elle avait assez de lui, նա նրանից հոգնել՝ ձանձրացել էր. il avait assez de la vie, նա կյանքից ձանձրացել էր. on ne put trouver assez de lits, բավականաչափ մահճակալներ չկարողացան գտնել: // Assez pour. avoir assez pour vivre, ապրելու համար բավականաչափ փող ունենալ. il n'est pas assez vieux pour mourir, նա այնքան ծեր չէ, որ մահանա. vous n'êtes pas assez sot pour le croire, դուք այդքան հիմար չեք, որ դրան հավատաք: // Assez pour que. pas assez jolie pour qu'on l'admire, ոչ այնքան գեղեցիկ, որ նրանով հիանան: // *Խսկց.* J'en ai assez, հոգնել եմ, կուշտ եմ, բավական է:
– interj. Բավակա՛ն է:

**assidu, ue** adj. Ուշադիր, հոգատար (auprès de): // Ջանասեր, պարտաճանաչ. assidu au cours, դասերին կանոնավոր հաճախող:

**assiduité** f. Կանոնավոր հաճախում (à): // Ջանասիրություն (à): // Pl. Փութաջանություն, ուշադրություն (կնոջ հանդեպ):

**assidûment** adv. Ջանասիրաբար, փութաջանորեն:

**assied** Տե՛ս Asseoir (18):

**assiégé, ée** adj., s. *Ռազմ.* Պաշարյալ:

**assiégeant, ante** adj. *Ռազմ.* Պաշարողական:

**assiéger** v. tr. (5,7). *Ռազմ.* Պաշարել (une ville): // *Խսկց.* Շրջապատել, շրջափակել, վրա տալ: // *Խսկց.* Նեղել (un débiteur). համակել, անհանգստացնել (l'esprit):

**assiette** f. Ափսե. assiette creuse (կամ) à soupe, խոր ափսե. assiette plate, տափակ ափսե. manger dans une assiette, ափսեից ուտել: // Դիրք, նիստ, նստվածք (à cheval). perdre son assiette, հավասարակշռությունը կորցնել: // Դիրք, դրություն, վիճակ. assiette matérielle, նյութական դրություն: // *Ճրտրպ.* Դիրք (d'une maison): // *Տեխ.* Հենարան, պատվանդան (d'une machine): // *Ֆին.* Հարկադրման ենթակա գումար, ունեցվածք (de l'impôt): // *Ծով.* Նավի հավասարակշռություն: // *Փխբ.* Դրություն, վիճակ. ne pas se sentir dans son assiette, իրեն լավ չզգալ, անհանգիստ լինել, տեղը չգտնել: // *Խսկց.* L'assiette au beurre, յուղոտ տեղ՝ գործ՝ պաշտոն:

**assiettée** f. Մի ափսե, լիքը ափսե (պարունակությունը):

**assignable** adj. Սահմանելի: // *Իրավբ.* Ընդդատյա, ենթադատ:

**assignat** m. *Հնց.* (Ֆրանսիական հեղափոխության ժամանակ տպված) թղթադրամ:

**assignation** f. *Իրավբ.* Դատական ծանուցագիր. envoyer (կամ) remettre une assignation à, դատական ծանուցագիր ուղարկել (կամ) հանձնել: // *Ֆին.* Հատկացագիր:






**assigner** v. tr. (1): *Իրավբ.* Դատարան կանչել (տե՛ս Citer). assigner qqn en justice, դատական գործ հարուցել մեկի դեմ: // *Ֆին.* Հատկացնել (des crédits): // *Փխբ.* Վերագրել (à). Նշանակել:

**assimilable** adj. Նման, համեմատելի: // Յուրացվող: // Ասիմիլյացիայի ենթակա:

**assimilation** f. Յուրացում: // Ասիմիլյացիա: // Նմանեցում: // Համեմատություն: // *Քրկն.* Առնմանություն:

**assimilé** m. Զինվորականին հավասարազոր քաղաքացիական պաշտոն ունեցող:

**assimiler** v. tr. (1): Նմանեցնել. պաշտոնները հավասարեցնել: // Համեմատել (à): // *Քրկն.*, *Բժշկ.* Յուրացնել:
– v. pr. **S'assimiler,** ասիմիլյացիայի ենթարկվել. յուրացվել: // Նմանվել (à):

**assis, ise** adj. Նստած. être assis à table, սեղանի մոտ նստած լինել. rester assis, նստած մնալ, վեր չկենալ. place assise, նստելու տեղ: // *Ճրտրպ.* Տեղադրված (bâtiment): // *Իրավբ.* La magistrature assise, դատավորները: // *Փխբ.* Կայուն (réputation). պատկառելի (fortune). վստահելի (enterprise): // *Խսկց.* Խիստ զարմացած, ապշահար:

**assise** f. Նեցուկ, հենարան (des fondations): // Նիստ, նստվածք: // *Երկրբ.* Շերտ, ապարների տեղադրություն: // *Իրավբ.* Pl. Երդվյալ ատենակալներ. նիստեր (séances). envoyer aux assises, դատի տալ. tenir ses assises, նիստ անել: // *Փխբ.* Pl. Հիմք (տե՛ս Base):

**assistanat** m. Ասիստենտի պաշտոն, ասիստենտություն:

**assistance** f. Օգնություն, օժանդակություն. prêter assistance à, օգնել: // Ներկա գտնվողներ, լսողներ, հանդիսատեսներ, հավաքվածներ. toute l'assistance, բոլոր ներկա գտնվողները: // Ներկայություն, հաճախում. l'assistance au cours, դասախոսության հաճախումը: // *Իրավբ.* Assistance judiciaire, իրավաբանական օգնություն. assistance sociale, սոցիալական օգնություն. assistance à l'enfance, օգնություն երեխաներին: // *Եկեղ.* Միաբանություն:

**assistant, ante** adj. Ներկա գտնվող:
– s. Օգնական. ասիստենտ. poste d'assistant. ասիստենտի տեղ՝ պաշտոն: // Assistante sociale, սոցիալական օգնության աշխատող: // Ներկա գտնվող, դիտող, հանդիսատես. les assistants, ներկա գտնվողները:

**assisté, ée** adj. Օգնություն ստացող:
– s. Օգնություն ստացող անձ. enfants assistés, մանկատան երեխաներ:

**assister** v. tr. (1): Օգնել (տե՛ս Aider, Secourir). assister de, մի բանով օգնել: // Սպասարկել, օգնել, օգնություն ցույց տալ (les blessés, les malades, les mourants):
– v. intr. Assister à, վկա լինել (un accident). ներկա լինել (une réunion):

**associable** adj. Զուգորդելի:

**associatif, ive** adj. Զուգորդական, ասոցիատիվ:

**association** f. Զուգորդություն (*ուղղ. և փխբ.*): // Միություն, ընկերություն, ասոցիացիա. association de bienfaisance, բարեգործական ընկերություն: // Միացում, կցում:

**associationnisme** m. *Փիլ.* Ասոցիացիոնիզմ:

**associé, ée** adj. Միացած, կապված. անդամակից (գիտական ընկերության): // *Գտնտ.* Cultures associées, զուգորդվող կուլտուրաներ:
– s. Ոչ լիիրավ անդամ (գիտական ընկերության): // *Առևտր.* Գործակից, մասնակից, գործընկեր. prendre comme associé, իրեն գործընկեր վերցնել:

**associer** v. tr. (1): Զուգորդել. կցել, միավորել. associer qqch à, մի բանի միացնել՝ կցել. associer qqn à, մեկին մասնակից դարձնել: // *Էլ.* Միացնել:
– v. pr. **S'associer,** զուգորդվել. s'associer qqn, մեկին իր գործընկերը (կամ) օգնականը դարձնել: // S'associer à (կամ) avec qqn, միանալ, ընկերություն՝ բաժնետիրությություն հիմնել մեկի հետ: // S'associer à, մասնակից դառնալ, միանալ. je m'associe à votre opinion, միանում եմ ձեր կարծիքին:

**assoiffé, ée** adj. Ծարավ, ծարաված (տե՛ս Altéré). // *Փխբ.* Ծարավի (de):

**assoiffer** v. tr. (1): Ծարավեցնել:

**assois** Տե՛ս Asseoir (18):

**assolement** m. (1): *Գտնտ.* Ցանքաշրջանառություն:

**assoler** v. tr. (1): *Գտնտ.* Ցանքաշրջանառություն կատարել, հերթափոխել (մշակաբույսերի ցանքը):

**assombri, ie** adj. Մթնած: // Ամպամած: // *Փխբ.* Մռայլված (visage):

**assombrir** v. tr. (2): Մթնեցնել: // *Փխբ.* Մռայլեցնել:
– v. pr. **S'assombrir,** մթնել: // Ամպերով ծածկվել: // *Փխբ.* Մռայլվել (visage):

**assombrissement** m. Մթնելը: // Մռայլվելը:

**assommant, ante** adj. Շշմեցուցիչ, սպանիչ, անտանելի. type assommant, ձանձրալի անձնավորություն:

**assommer** v. tr. (1): Խփել, հարված հասցնել (գլխին), շշմեցնել: // *Փխբ.* Շշմեցնել,ապշեցնել (stupéfier). assommé par, բթացած (la boisson). ուժասպառ (la chaleur): // *Խսկց.* Ձանձրացնել, տաղտկացնել (տե՛ս Embêter, Ennuyer):

**assommeur** m. Սպանդարար:

**assommoir** m. Բիր, գավազան. coup d'assommoir, ծանր հարված. *Փխբ.*, շշմեցուցիչ նորություն: // Գինետուն, օղետուն: // Որոգայթ:

**Assomption** f. *Եկեղ.* Վերափոխում:

**assonance** f. *Քրկն.* Ասոնանս, առձայնույթ, առձայնություն:

**assonant, ante** adj. Համահունչ:

**assorti, ie** adj. Խառը (bonbons, gâteaux): // Հարմար, համապատասխան. couple bien assorti, union bien assortie, շատ համապատասխան զույգ. des nuances assorties, իրար սազող երանգներ. une robe et des souliers assortis, իրար համապատասխանեցրած զգեստ և կոշիկներ: // *Առևտր.* Մեծ տեսականի ունեցող, լավ մատակարարված:

**assortiment** m. Ասորտիմենտ, տեսականի: // Համապատասխանություն, ներդաշնակություն. mauvais assortiement, անհամապատասխանություն:

**assortir** v. tr. (2): Համաձայնեցնել, համապատասխանեցնել, ներդաշնակել (à) [une couleur, une étoffe]. mal assortir, անհամապատասխան զույգ ստեղծել: // *Առևտր.* Մատակարարել:
– v. intr. Համապատասխանել, ներդաշնակել, սազել:
– v. pr. **S'assortir,** միմյանց համապատասխանել, միմյանց սազել, ներդաշնակ լինել. s'assortir bien ou mal, իրար համապատասխանել (կամ) չհամապատասխանել: // *Առևտր.* Մատակարարվել տարբեր ապրանքներով: // *Փխբ.* Ներդաշնակել (հոգեպես):

**assortissant, ante** adj. Հարմար, համապատասխան (à):

**assoupir** v. tr. (2): Քնեցնել, թմրեցնել: // *Փխբ.* Հանգստացնել, թուլացնել:
– v. pr. **S'assoupir,** Նիրհել: // *Փխբ.* Հանգստանալ, հանդարտվել, թուլանալ:

**assoupissant, ante** adj. Քնաբեր, թմրեցուցիչ:

**assoupissement** m. Քնկոտություն, թմրություն: // Նիրհ: // *Փխբ.* Հոգեկան անտարբերություն, հուլություն. անգործունեություն. թմրություն:

**assouplir** v. tr. (2): Ճկունացնել, վարժեցնել: // *Փխբ.* Մեղմացնել, կակղեցնել:
– v. pr. **S'assouplir,** ճկունանալ: // *Փխբ.* Մեղմանալ, կակղել:

**assouplissement** m. Ճկունացում. exercices d'assouplissement, մարզական վարժություններ:

**assourdir** v. tr. (2): Խլացնել: // Մեղմացնել (les couleurs, la lumière). իջեցնել (un son): // *Երժշտ.* Մեղմոց դնել: // *Քրկն.* Խլացնել (une consonne):
– v. pr. **S'assourdir,** մեղմանալ, իջնել, թուլանալ: // *Քրկն.* Խլանալ (consonne):

**assourdissant, ante** adj. Խլացուցիչ:

**assourdissement** m. Խլացում: // Մեղմացում (d'une couleur). իջեցում (d'un son): // *Քրկն.* Խլացում (d'une consonne): // *Բժշկ.* Լսողության թուլացում:

**assouvir** v. tr. (2): Հագեցնել (sa faim, sa soif): // *Առևտր.* Լցնել, հեղեղել (le marché): // *Փխբ.* Հագուրդ տալ (ses passions):
– v. pr. **S'assouvir,** հագենալ (de):

**assouvissement** m. Հագուրդ, հագեցում: // Հագեցվածություն:

**assuétude** f. *Բժշկ.* Կախում, կախվածություն:

**assujetti, ie** adj. Ամրացված, կապված: // Ենթակա (à):

**assujettir** v. tr. (2): Ամրացնել: // Ենթարկել, հպատակեցնել (տե՛ս Opprimer): // Ստիպել (à): // Կլանել: // *Փխբ.* Զսպել, սանձահարել (ses passions):
– v. pr. **S'assujettir,** ենթարկվել, հպատակվել, զիջել (à):

**assujettissant, ante** adj. Կլանող (travail):

**assujettissement** m. Ամրացում: // Ենթարկվածություն, հպատակություն, կախվածություն: // *Ֆին.* Assujettissement à l'impôt, հարկադրություն:

**assumer** v. tr. (1): Ստանձնել:

**assurable** adj. Ապահովագրելի:

**assurance** f. Վստահություն (տե՛ս Certitude). avoir la parfaite assurance, կատարելապես վստահ լինել: // Ինքնավստահություն. manquer d'assurance, ինքնավստահ չլինել: // Համարձակություն (տե՛ս Aplomb): // Ապահովություն: // Երաշխիք: // Հավաստիացում (տե՛ս Affirmation, Promesse). donner l'assurance formelle, հանդիսավոր խոստում տալ: // *Իրավք.* Ապահովագրում, ապահովագրություն. assurance contre les accidents, ապահովագրություն դժբախտ պատահարներից. assurance contre l'incendie, ապահովագրություն հրդեհից. assurance maladie, ապահովագրություն հիվանդություններից. assurances sociales, սոցիալական ապահովագրություն. assurance sur la vie, կյանքի ապահովագրություն. assurance vieillesse, ծերության ապահովագրում. passer un contrat d'assurance, ապահովագրական պայմանագիր կնքել:







**assuré, ée** adj. Ինքնավստահ (air). վստահ (démarche). ապահով (situation, travail). assuré du succès, հաջողության մեջ վստահ. mal assuré, անվստահ. rien d'assuré, ոչ մի հաստատ բան: // Ապահովագրված:
– s. *Իրավք.* Ապահովագրված անձ. assuré social, սոցիալական ապահովագրությունից օգտվող անձ:

**assurément** adv. Իհարկե, անշուշտ:

**assurer** v. tr. (1): Կայունացնել: // Վստահեցնել (տե՛ս Affirmer): // Երաշխավորել (à). assurer le service, լավ սպասարկում ապահովել: // Ապահովագրել (qqch, qqn):
– v. pr. **S'assurer,** հավաստիանալ (que): // S'assurer l'accès à, մուտք ձեռք բերել: // S'assurer de la personne de qqn, մեկի հովանավորությունը ձեռք բերել: // *Իրավք.* Ապահովագրվել. s'assurer sur la vie, իր կյանքն ապահովագրել. s'assurer contre, մի բանից ապահովագրվել:

**assureur** m. *Իրավք.* Ապահովագրորդ:

**assyrien, ienne** adj. Ասուրական:
– s. Ասուր, ասորեստանցի:
– m. Ասուրերեն:

**assyriologie** f. Ասուրագիտություն:

**astate** m. *Քիմ.* Աստատ:

**astatique** adj. *Ֆիզ.* Անկայուն:

**aster** [astɛʀ] adj. *Բսբ.* Աստղածաղիկ: // *Բժշկ.* Ճառագայթաձև դասավորություն (բջջի):

**astérie** f. *Կենդբ.* Ծովաստղ:

**astérisque** m. Աստղանիշ:

**astéroïde** m. *Աստղգ.* Աստերոիդ, փոքր մոլորակ:

**asthénie** f. *Բժշկ.* Թուլություն, ասթենիա:

**asthénique** adj. Անուժ, թույլ:
– s. Ասթենիայով տառապող:

**asthmatique** adj., s. *Բժշկ.* Շնչարգելությամբ տառապող:

**asthme** m. *Բժշկ.* Շնչարգելություն:

**asticot** m. Թրթուր, որդ: // *Խսկց.* Մարդ, տիպ:

**asticoter** v. tr. (1): Նեղել, ձանձրացնել, զզվեցնել, հոգին հանել:

**astigmate** adj. *Բժշկ.* Աստիգմատ:

**astigmatisme** m. *Բժշկ.* Աստիգմատիզմ:

**astiquage** m. Հղկում, փայլեցում:

**astiquer** v. tr. (1): Հղկել, փայլեցնել (տե՛ս Briquer, Fourbir):
– v. pr. **S'astiquer,** *Խսկց.* Զարդարվել:

**astragale** m. *Ճրտրպ.* Աստրագալ: // *Բսբ.* Գազ, խազհրան: // *Բժշկ.* Վեգ:

**astrakan** m. *Կենդբ.*, *Առևտր.* Կարակուլ:

**astral, ale** adj. *Աստղգ.* Աստղային:

**astre** m. *Աստղգ.* Աստղ, լուսատու. l'astre du jour, արև: // *Փխբ.* Աստղ:

**astreignant, ante** adj. Լարված, ծանր: // Կլանող (travail):

**astreindre** v. tr. (59): Ստիպել (à) [տե՛ս Obliger]:
– v. pr. **S'astreindre,** իրեն ստիպել:

**astreint, einte** adj. Ստիպված. ենթարկված (à):

**astreinte** f. *Իրավք.* Տույժ, տուգանք:

**astrictif, ive** adj. *Բժշկ.* Կապող:

**astringent, ente** adj. Կապող, կծկող:
– m. Կապող՝ կծկող դեղ (anti-hémorragique):

**astrobiologie** f. Աստղակենսաբանություն:

**astrolabe** m. *Աստղգ.* Աստրոլաբ:

**astrologie** f. *Աստղգ.* Աստղաբանություն:

**astrologique** adj. Աստղաբանական:

**astrologue** s. Աստղաբան:

**astronaute** s. Աստղագնաց:

**astronautique** f. Աստղագնացություն:

**astronef** m. *Օդգ.* Աստղանավ, տիեզերանավ:

**astronome** s. Աստղագետ:

**astronomie** f. Աստղագիտություն:

**astronomique** adj. Աստղային (année, jour, unité): // *Խսկց.* Աստղաբաշխական (prix):

**astronomiquement** adv. Աստղագիտորեն:

**astrophysicien, ienne** s. Աստղաֆիզիկոս:

**astrophysique** f. Աստղաֆիզիկա:

**astuce** f. Խորամանկություն: // Հնարք, հնարագիտություն: // *Խսկց.* Բառախաղ, սրամտություն:

**astucieusement** adv. Խորամանկորեն, հնարագիտորեն:

**astucieux, euse** adj. Խորամանկ, հնարագետ, ճարպիկ:

**asymétrie** [asimetʀi] f. Անհամաչափություն:

**asymétrique** [asimetʀik] adj. Անհամաչափ:

**asymptote** [asɛ̃ptɔt] f. *Մաթ.* Ասիմպտոտ, անհանդիպագիծ:

**asymptotique** [asɛ̃ptɔtik] adj. *Մաթ.* Ասիմպտոտային:

**asynchrone** [asɛ̃kʀon] adj. *Ֆիզ.* Անհամաժամանակյա:

**asyndète** [asɛ̃dɛt] f. *Քրկն.* Անշաղկապություն:

**ataraxie** f. *Փիլ.*, *Բժշկ.* Անխռովություն, հոգեկան հանդարտություն:

**atavique** adj. Ատավիստական, առհավական:
**atavisme** m. Ատավիզմ, առհավություն:
**ataxie** f. *Բժշկ.* Ատաքսիա, ապակարգություն:
**ataxique** adj. *Բժշկ.* Ատաքսիային հատուկ:
– s. *Բժշկ.* Ատաքսիայով տառապող հիվանդ:
**atèle** m. *Կենդբ.* Սարդակերպ կապիկ:
**atelier** m. Արվեստանոց (d'artiste). արհեստանոց, ատելյե. արտադրամաս:
**atemporel, elle** adj. Արտաժամանակյա:
**atermoiement** m. Հետաձգում, ձգձգում: // *Իրավք.* Վճարման երկարաձգում:
**atermoyer** v. tr. (9a): Հետաձգել, երկարաձգել:
– v. intr. Ձգձգել:
– v. pr. **S'atermoyer,** ձգձգվել, երկարաձգվել:
**athée** s. Աթեիստ, աստվածամերժ:
**athéisme** m. Աթեիզմ, աստվածամերժություն:
**athénée** m. Աթենեոն:
**Athènes** *Աշխգր.* Աթենք:
**athénien, enne** adj. Աթենական:
– s. Աթենացի:
**athermane** adj. *Ֆիզ.* Ջերմամեկուսիչ:
**athlète** s. *Մարզ.* Աթլետ:
**athlétique** adj. *Մարզ.* Աթլետական, աթլետային, աթլետիկ:
**athlétisme** m. *Մարզ.* Աթլետիկություն. աթլետիկա:
**atlante** m. *Ճրտրպ.* Ատլանտ:
**atlantique** adj. Ատլանտյան:
– m. *Աշխգր.* Ատլանտյան օվկիանոս:
**Atlas** [atlɑs, as] m. *Աշխգր.* Ատլասի լեռներ:
**atlas** [atlɑs, as] m. *Աշխգր., Բժշկ.* Ատլաս:
**atmosphère** f. *Ֆիզ., Փխբ.* Մթնոլորտ:
**atmosphérique** adj. Մթնոլորտային:
**atoll** m. *Աշխգր.* Ատոլ, մարջանային կղզի:
**atome** m. *Քիմ., Ֆիզ.* Ատոմ: // *Փխբ.* Հյուլե:
**atomicité** f. *Քիմ.* Վալենտականություն:
**atomique** adj. Ատոմային (énergie, nombre, poids, théorie, volume). bombe atomique, ատոմային ռումբ:
**atomisation** f. Փոշիացում, հյուլեացում: // Պառակտում, տրոհում:
**atomiser** v. tr. (1): Փոշիացնել: // Քանդել:
**atomiseur** m. Պուլվերիզատոր, հեղուկացիր, փոշեցիր:
**atomisme** m. *Փիլ.* Ատոմիզմ:
**atomiste** s. *Փիլ.* Ատոմիստ: // *Ֆիզ.* Ատոմագետ:
**atomistique** adj. *Փիլ.* Ատոմիստական:
– f. *Ֆիզ.* Ատոմագիտություն:

**atonal, ale** adj. *Երժշտ.* Ատոնալ:
**atonalité** f. Ատոնալություն:
**atone** adj. *Քրկն.* Անշեշտ: // *Բժշկ.* Թույլ, անուժ, տկար: // Խամրած, անկենդան (regard). տաղտկալի, գորշ (vie). անկյանք, անգույն (voix):
**atonie** f. *Բժշկ.* Անուժություն, թուլություն, տկարություն (տե՛ս Apathie):
**atonique** adj. *Բժշկ.* Թուլացած, ատոնիկ:
**atour** m. Պճնազգեստ. dans ses plus beaux atours, պճնված, զուգված-զարդարված:
**atout** m. Հաղթաթուղթ. jouer atout, հաղթաթուղթ գնալ. prendre avec un atout, հաղթաթղթով վերցնել: // *Փխբ.* Avoir tous les atouts en main, տիրապետել իրավիճակին. un gros atout, բացարձակ առավելություն: // *Խսկց.* Հարված:
**A.T.P.** [atepe] f. *Հպվ.* Adénosine triphosphate, ադենոզին եռաֆոսֆորաթթու, ԱԵՖ:
**atrabilaire** adj. Մաղձոտ:
**âtre** m. Օջախ:
**atroce** adj. Դաժան, սոսկալի, սաստիկ, դժնդակ, անտանելի:
**atrocement** adv. Սաստիկ՝ սարսափելի՝ անտանելի՝ ահավոր ձևով:
**atrocité** f. Դաժանություն, գազանություն, դժնդակություն: // *Խսկց.* Չարախոսություն, զրպարտություն:
**atrophie** f. *Բժշկ.* Ատրոֆիա, ծյուրում, քայքայում, ապաճում:
**atrophié, ée** adj. *Բժշկ., Փխբ.* Ջլատված, քայքայված, ծյուրված:
**atrophier** v. tr. (1): Ծյուրել, ուժասպառել, ջլատել, քայքայել, ապաճեցնել:
– v. pr. **S'atrophier,** ծյուրվել, ուժասպառվել, ջլատվել, քայքայվել, ապաճել:
**atropine** f. *Քիմ.* Ատրոպին:
**attabler (s')** v. pr. (1): Սեղան նստել:
**attchant, ante** adj. Հետաքրքրական, գրավիչ:
**attache** f. Կապ, փոկ. à l'attache, կապված (chien). piquet d'attache, կապելու ցից: // Ամրակ: // *Տեխ.* Ամրակ, կցակ, պնդակ: // *Բժշկ.* Կցվածք. կոճ (ոտքի). դաստակ: // Pl. *Փխբ.* Կապ, կապող բան: // *Փխբ.* Etre toujours à l'attache, միշտ կախում ունենալ մեկից:
**attaché, ée** adj. Կապված (lié): // Նվիրված (à qqn): // Հատուկ, ներհատուկ (à):
– s. Կցորդ (դեսպանատան): // **Attaché-case,** m. Դիպլոմատ (փաստաթղթերի փոքրիկ ճամպրուկ):
**attachement** m. Կապվածություն (տե՛ս Affection): // Նվիրվածություն:






**attacher** v. tr. (1): Կապել, ամրացնել: // Կցել, միացնել: // *Փխբ.* Վերագրել. attacher de l'importance à, կարևորություն տալ. attacher du prix à, արժեքավորել, գնահատել. attacher un sens à, իմաստավորել:
– v. intr. *Խհրր.* Տակը կպչել:
– v. pr. **S'attacher,** կապվել, կպչել, կառչել (à). s'attacher aux pas de, մեկին շան նման հետևել: // *Փխբ.* Կցվել, հարել. նվիրվել. կպչել (գործի), մեծ հետաքրքրություն ցուցաբերել:
**attaquable** adj. Խոցելի. վիճելի:
**attaquant, ante** adj., s. Հարձակվող:
**attaque** f. *Ռազմ.* Հարձակում, գրոհ (տե՛ս Assaut): // *Օդգ.* Attaque aérienne, օդային հարձակում: // *Բժշկ.* Նոպա. attaque d'apoplexie, կաթվածահարում: // *Երժշտ.* Նվագել սկսելը: // *Փխբ.* Հարձակում, քննադատություն: // Etre d'attaque, եռանդով լի՝ գործելու պատրաստ լինել:
**attaquer** v. tr. (1): Հարձակվել, գրոհել (տե՛ս Assaillir): // Փչացնել, վնասել, մաշել: // Ձեռնամուխ լինել: // *Բժշկ.* Ախտահարել: // *Իրավք.* Վիճարկել, գանգատարկել. գործ հարուցել: // *Երժշտ.* Սկսել նվագել: // *Մարզ.* Ուղարկել, հասցեագրել (la balle): // *Փխբ.* Հարձակվել, քննադատել (qqn). վիճարկել, կասկածի ենթարկել (la véractié):
– v. intr. Հարձակվել:
– v. pr. **S'attaquer à,** հարձակման անցնել: // *Փխբ.* Դիմագրավել (une difficulté). s'attaquer à une tâche, գործի անցնել:
**attardé, ée** adj. Ուշացած: // *Փխբ.* Հետամնաց. թերզարգացած, թուլամիտ:
**attarder** v. tr. (1): Ուշացնել:
– v. pr. **S'attarder,** ուշանալ, հապաղել, հետ մնալ, քարշ գալ, թրև գալ: // Ժամանակ կորցնել (à, sur):
**atteindre** v. tr. (59): Հասնել: // Խփել, դիպչել: // *Ռազմ.* Հարվածել, խփել: // *Բժշկ.* Ախտահարել. être atteint de, տառապել (ինչ-որ հիվանդությամբ): // *Փխբ.* Իրականացնել, հասնել (un but). atteindre qqn dans son honneur, պատվին դիպչել:
– v. intr. Atteindre à, հասնել:
**atteinte** f. Հասանելիություն. hors d'atteinte, անհասանելի, վտանգից դուրս: // Հպում. հարված: // *Բժշկ.* Նոպա. ախտահարում: // *Փխբ.* Վիրավորանք. porter atteinte à, վնաս հասցնել:
**attelage** m. Լծում, լծելը: // Լծասարք: // Կառք՝ ձիերով և լծասարքով: // *Տեխ.* Շղթայակցում (վագոնների):

**atteler** v. tr. (8a): Լծել: // Շղթայակցել (des wagons): // *Փխբ.* Etre attelé à, կապված՝ շղթայված լինել:
– v. pr. **S'atteler,** լծվել: // *Փխբ.* S'atteler à, լծվել (գործի), գործի անցնել:
**attelle** f. *Տեխ.* Լծաղեղ: // *Բժշկ.* Տախտակաձող, բեկակալ:
**attenant, ante** adj. Կից. հարակից (տե՛ս Adjacent):
**attendre** v. tr. (4): Սպասել. la réponse ne se fit pas attendre, պատասխանը չուշացավ. elle se fait attendre, նա ուշանում է: // Ակնկալել, հուսալ, հույս ունենալ. qu'attendre d'un pareil froussard ?, ի՞նչ կարելի է սպասել նման վախկոտից: // Վերապահված լինել. un bel avenir vous attend, ձեզ մեծ ապագա է սպասում. le dîner vous attend, ճաշը պատրաստ է: // En attendant, մինչ այդ. en attendant que, մինչև որ. en attendant qu'il revienne, մինչև նրա վերադառնալը:
– v. intr. Հետաձգվել. cela peut attendre, դա շտապ չէ:
– v. pr. **S'attendre** (à), սպասել, պատրաստ լինել, կանխատեսել. il ne s'attendait pas à la voir, նա չէր սպասում, թե նրան կտեսնի. il faut vous attendre à tout, դուք պետք է ամեն ինչի պատրաստ լինեք:
**attendri, ie** adj. Գթագորով, գթալից, գորովալից, խանդաղատալի:
**attendrir** v. tr. (2): Փափկացնել: // *Փխբ.* Հուզել, գթաշարժել, գութը շարժել:
– v. pr. **S'attendrir,** փափկանալ, կակղել: // *Փխբ.* Հուզվել, գթաշարժվել, խանդաղատել:
**attendrissant, ante** adj. Հուզիչ, խանդաղատելի, գթաշարժ:
**attendrissement** m. Գութ, գորով, խանդաղատանք:
**attendrisseur** m. Կակղացուցիչ (մսի):
**attendu, ue** adj. Սպասված. նախատեսված:
– prép. Հաշվի առնելով, նկատի ունենալով:
– loc. conj. Attendu que, հաշվի առնելով, որ, նկատի ունենալով, որ, քանի որ:
– Pl. *Իրավք.* Փաստարկներ, հիմնավորում (d'un jugement):
– p.p. Տե՛ս Attendre:
**attentat** m. Մահափորձ (contre) [la vie]. զանցառություն, խախտում. attentat à l'ordre public, հասարակական կարգի խախտում. attentat contre la sûreté de l'Etat, պետական դավաճանություն:
**attentatoire** adj. *Իրավք.* Զանցառող, խախտող (à):

**attente** f. Սպասում. salle d'attente, սպասասրահ: // Սպասելիք. contre toute attente, հակառակ սպասածի. dans l'attente de, սպասելով:

**attenter** v. intr. (1): Մահափորձ՝ ոտնձգություն կատարել (à). attenter à ses jours, ինքնասպանության փորձ կատարել:

**attentif, ive** adj. Ուշադիր:

**attention** f. Ուշադրություն. avec attention, ուշադրությամբ. attirer l'attention, ուշադրություն գրավել. défaut d'attention, անուշադրություն. faire attention à, ուշադրություն դարձնել, ուշադիր լինել: // Ուշադրություն, հոգատարություն, խնամք:
– interj. Ուշադրությո՜ւն:

**attentionné, ée** adj. Ուշադիր, հոգատար:

**attentisme** m. Սպասողական քաղաքականություն:

**attentiste** adj. Politique attentiste, սպասողական քաղաքականություն:
– s. Սպասողական քաղաքականություն վարող անձ:

**attentivement** adv. Ուշադիր, ուշադրությամբ, հոգատարությամբ:

**atténuant, ante** adj. Նրբացնող, մեղմացնող: // *Իրավբ.* Նրբացուցիչ, մեղմացուցիչ (circonstances):

**atténuation** f. Մեղմացում, թուլացում, թեթևացում:

**atténuer** v. tr. (1): Մեղմացնել, թուլացնել, թեթևացնել:
– v. pr. **S'atténuer,** մեղմանալ, թուլանալ, թեթևանալ:

**atterrage** m. *Ծով.* Ցամաքին մոտենալը, ցամաքի մերձավորությունը: // Ցամաք տեսնելը (նավից):

**atterrer** v. tr. (1): Ապշեցնել, խոցել, շանթահար անել. être atterré, սրտաբեկ՝ վշտահար լինել:

**atterrir** v. intr. (2): *Օդգ.* Վայրէջք կատարել (avion). գետնին դիպչել (ballon): // *Ծով.* Ափին մոտենալ: // *Խսկց.* Հայտնվել:

**atterrissage** m. *Օդգ.* Վայրէջք. atterrissage forcé, հարկադիր վայրէջք: // *Ծով.* Ափին մոտենալը:

**atterrisseur** m. *Օդգ.* Ինքնաթիռի շասսի:

**attestation** f. Վկայում, հաստատում. վկայագիր, վկայական, վկայաթուղթ: // Վկայություն, ցուցմունք:

**attester** v. tr. (1): Հաստատել. վկայել, վկայություն տալ: // Վկայության կանչել:

**attiédir** v. tr. (2): Գոլացնել: // *Փխբ.* Սառեցնել (l'ardeur):
– v. pr. **S'attiédir,** գոլանալ: // *Փխբ.* Սառել:

**attiédissement** m. Անտարբերացում, սառնացում:

**attifement** m. Պճնազարդ(վ)ելը. արտառոց հագնելաձև:

**attifer** v. tr. (1): Պճնել, զուգել-զարդարել (տե՛ս Accoutrer):
– v. pr. **S'attifer,** պճնվել, զուգվել-զարդարվել:

**attiger** v. intr. (7): *Խսկց.* Չափազանցել (տե՛ս Exagérer):

**attique** adj. Ատտիկյան (sel):

**attique** m. *Ճրտրպ.* Ձեղնահարկ, վերնահարկ, դստիկոն:

**attirail** m. Շքեղություն, ճոխություն: // Դժվարաշարժ՝ մեծածավալ բեռ: // *Տեխ.* Սարք, սարքավորում:

**attirance** f. Մղում, հակում, ձգտում (vers): // Գրավչություն, հրապույր:

**attirant, ante** adj. Գրավիչ, հրապուրիչ:

**attirer** v. tr. (1): Ձգել, քաշել (vers): // Առաջացնել, արթնացնել: // *Փխբ.* Գրավել, հրապուրել:
– v. pr. **S'attirer,** միմյանց ձգել:

**attiser** v. tr. (1): Թեժացնել (le feu): // *Փխբ,* Գրգռել, բորբոքել (la haine, les passions) [տե՛ս Exciter]:

**attisoir** m. Կրակխառնիչ:

**attitré, ée** adj. Նշանակված, մշտական: // *Առևտր.* Fournisseur attitré de, մշտական մատակարար:

**attitrer** v. tr. (1): Նշանակել, հանձնարարել:

**attitude** f. Դիրք, կեցվածք: // Վերաբերմունք (envers):

**attouchement** m. Հպում. guérir par attouchement, դիպչելով բուժել:

**attractif, ive** adj. *Ֆիզ.* Ձգողական:

**attraction** f. *Ֆիզ.* Ձգողականություն: // *Փխբ.* Ձգողականություն: // Pl. Զվարճալիք, ատրակցիոն:

**attrait** m. Գրավչություն, հմայք (տե՛ս Charme, Séduction). plein d'attraits, գրավիչ, հմայիչ: // Գայթակղություն, հրապուրանք: // Հակում, սեր (pour):

**attrapade** f. Հանդիմանություն, կշտամբանք:

**attrape** f. Վարմ, թակարդ: // *Ծով.* Փրկապարան: // *Խսկց.* Խաբեություն, խաբեբայություն: // **Attrape-mouches,** m. invar. Ճանճորս: // **Attrape-nigaud,** m. Հիմարներին խաբելու միջոց:

**attraper** v. tr. (1): Բռնել: // Ծուղակը գցել: // Ըմբռնել, հասկանալ. attraper la ressemblance, նմանությունը տեսնել: // Բռնեցնել, անակնկալի բերել: // Խաբել, հիմարացնել. il s'est fait attraper, նա ծուղակն ընկավ, նրան խաբեցին: // *Բժշկ.* Հիվանդանալ (une maladie). attraper un rhume, հարբուխ ընկնել: // *Խսկց.* Խիստ հանդիմանել, կշտամբել, շշպռել: // *Ժղ.* Ստանալ. attrape!, դե ստացի՛ր, դե կե՛ր. en attraper pour cinq ans, հինգ տարի ստանալ:
– v. pr. **S'attraper,** բռնվել, կառչել. ձեռք բերվել: // *Բժշկ.* Վարակիչ լինել: // *Խսկց.* Կռվել, վիճել, վեճի բռնվել (avec):





**attribuable** adj. Վերագրելի:

**attribuer** v. tr. (1): Պարգևատրել, տալ (տե՛ս Décerner): // Attribuer à, վերագրել:
– v. pr. **S'attribuer,** յուրացնել, իրեն վերագրել:

**attribut** m. Հատկանիշ, նշանակ: // *Քրկն.* Ստորոգելի, ստորոգելիական վերադիր: // *Ռազմ.* Տարբերանշան:

**attributif, ive** adj. Որոշիչ, հատկանշական: // *Քրկն.* Ստորոգելիական, վերադրային: // *Իրավբ.* Հատկացնող, իրավունքը՝ գույքը փոխանցող:

**attribution** f. Հատկացում, փոխանցում: // Պարտականության (տե՛ս Fonctions). իրավասություն. rentrer dans le cadre des attributions de qqn, մեկի իրավասության մեջ մտնել: // *Քրկն.* Հատկացում, ստորոգում:

**attristant, ante** adj. Տխրեցուցիչ, տխրեցնող:

**attristé, ée** adj. Տխուր, տխրած, վշտացած:

**attrister** v. tr. (1): Մթնեցնել: // Տխրեցնել:
– v. pr. **S'attrister,** տխրել, վշտանալ: // Մթնել, ամպերով ծածկվել. մռայլվել (ciel, visage):

**attrition** f. *Եկեղ.* Ապաշխարանք: // *Տեխ.* Մաշում (շփմամբ):

**attroupement** m. Ամբոխ, խաժամուժ (տե՛ս Rassemblement): // ժողով, հավաքույթ (assemablage):

**attrouper** v. tr. (1): Հավաքել, ժողովել:
– v. pr. **S'attrouper,** խմբվել, խռնվել:

**atypique** adj. Ոչ բնորոշ, ոչ տիպական:

**au** art. contracté. Տե՛ս A, Le:

**aubade** f. Այգերգ, առավոտյան երգ: // Աղմուկաղաղակ:

**aubaine** f. Անսպասելի հաջողություն, բախտ (տե՛ս Chance):

**aube** f. Լուսաբաց, արշալույս: // *Եկեղ.* Ժամաշապիկ:

**aube** f. *Ծով.* Թիանիվ: // *Տեխ.* Թիակաբերան, թիաբերան:

**aubépine** f. *Բսբ.* Սզնի, ալոճենի:

**auberge** f. Պանդոկ, հյուրանոց. auberge de la jeunesse, երիտասարդական տուրիստական բազա:

**aubergine** f. *Բսբ.* Բադրիջան, սմբուկ:
– adj. Մուգ մանուշակագույն:

**aubergiste** s. Պանդոկապետ. հյուրանոցի տեր՝ տիրուհի:

**aubier** m. *Բսբ.* Թերափայտ, սպիտկեն:

**auburn** adj. invar. Շագանակագույն՝ պղնձագույն երանգով:

**aucuba** m. *Բսբ.* Ճավաշար:

**aucun, une** adj. Որևէ (*հաստատական կամ հարցական նախադասության մեջ*). a-t-elle aucun espoir de revenir ?, վերադառնալու որևէ հույս ունի՞. sans aucune exception, առանց որևէ բացառության: // Ոչ մի (*ժխտական նախադասության մեջ*). il n'a aucun don, նա ոչ մի տվյալ չունի. ne prononcez aucun nom, ոչ մի անուն մի տվեք:
– pron. Որևէ մեկը (*կասկած արտահայտող նախադասության մեջ*). je me demande si aucun de nous réussira, կուզենայի իմանալ՝ մեզանից որևէ մեկը հաջողության կհասնի՞: // Ոչ մեկը (*ժխտական նախադասության մեջ*). je n'aime aucun d'eux, նրանցից ոչ մեկին չեմ սիրում. aucun n'a travaillé, ոչ մեկը չի աշխատել: // Ոչ ոք (personne). aucun n'est content de son sort, ոչ ոք գոհ չէ իր բախտից: // *Loc.* D'aucuns, ոմանք:

**aucunement** adv. Որևէ կերպ: // Ոչ մի կերպ:

**audace** f. Խիզախություն, համարձակություն (տե՛ս Hardiesse): // Հանդգնություն (տե՛ս Effronterie). avoir l'audace de, հանդգնել, համարձակվել. payer d'audace, հանդգնության դիմել:

**audacieusement** adv. Համարձակորեն, խիզախորեն, հանդգնաբար:

**audacieux, euse** adj. Համարձակ, խիզախ (տե՛ս Hardi): // Հանդուգն, լկտի (տե՛ս Effronté):

**au-deçà** adv. Այս կողմը:

**au-dedans** adv. Մեջը, ներսում:
– loc. prép. Au-dedans de, մեջ, ներսում:

**au-dehors** adv. Դրսում: // Արտասահմանում:

**au-delà** adv. Ավելին, առավել. մյուս կողմում. ավելի երկար. այն կողմը:
– loc. prép. Au-delà de, այն կողմ: // *Փխբ.* Ավելի, վեր. au-delà de ses espérances, իր սպասելիքներից ավելին. au-delà du tolérable, ավելի, քան կարելի է հանդուրժել՝ տանել:
– m. Այնկողմնային կյանք:

քան նա գեղեցիկ է: // D'autant, նույնքան, նույն չափով, համապատասխանաբար: // D'autant que, մանավանդ որ: // D'autant plus … que, առավել ևս …, որ, էլ ավելի …, որովհետև. d'autant plus fier, էլ ավելի հպարտ. d'autant plus puissant que, առավել ևս հզոր է այն պատճառով, որ. je suis d'autant plus inquiète que, ես այն պատճառով եմ ավելի անհանգիստ, որ: // D'autant moins … que, էլ ավելի քիչ …, քանի որ, այնքանով ավելի քիչ, որ: // Pour autant, այնուամենայնիվ, այդուհանդերձ:

**autarcie** f. Ինքնաբավություն, փակ տնտեսություն:

**autarcique** adj. Ինքնաբավ (տնտեսական քաղաքականության մասին):

**autel** m. *Եկեղ.* Խորան, սեղան. maître autel, ավագ խորան. mettre sur les autels, սրբացնել, սուրբ հայտարարել:

**auteur** m. Հեղինակ. femme auteur, կին հեղինակ. droits d'auteur, հեղինակային իրավունքներ: // Մեղավոր (d'un accident). հանցագործ (d'un crime). l'auteur de mes jours, հայրս:

**authenticité** f. Իսկություն, իսկականություն, վավերականություն:

**authentifier, authentiquer** v. tr. (1): Իսկությունը հաստատել, վավերացնել. inventaire authentifié, հաստատված գույքագրում:

**authentique** adj. Իսկական: // *Իրավբ.* Օրինական (acte). հաստատված (copie):

**authentiquement** adv. Իսկապես, հաստատ. օրինական ձևով:

**autisme** m. *Հոգբ.* Ինքնապարփակում:

**autiste, autistique** adj. *Հոգբ.* Ինքնապարփակ:

**auto** f. Ավտոմեքենա. faire de l'auto, մեքենա քշել, մեքենա վարել:

**auto-** préf. Ավտո-, ինքնա-: // **Auto-adhésif, ive** adj. Ինքնակպչուն: // **Auto-allumage,** m. Ինքնաբոցավառում: // **Auto-couchettes,** adj. invar. *Ավտ.*, *Երկթղ.* Train auto-couchettes, ննջավագոններ ունեցող մեքենատար գնացք: // **Auto-école,** f. *Ավտ.* Ավտոդպրոց: // **Auto-érotique,** adj. Ինքնատարփ: // **Auto-érotisme,** m. Ինքնատարփություն: // **Auto-immune,** adj. *Բժշկ.* Maladies auto-immunes, ինքնահիմունային հիվանդություններ: // **Auto-immunitaire,** adj. *Բժշկ.* Ինքնիմուն, ինքնավարակամերժ (processus, mécanismes): // **Auto-induction,** f. *Էլ.* Ինքնաինդուկցիա: // **Auto-intoxication,** f. *Բժշկ.* Ինքնաթունավորում: // **Auto-stop,** m. *Ավտ.* Ավտոստոպ: // **Auto-stoppeur, euse** s. *Ավտ.* Ավտոստոպ անող, նույնընթաց մեքենայով անվճար ճանապարհորդող:

**autoberge** f. Ափով ընթացող ավտոմոբիլային ճանապարհ:

**autobiographe** s. Ինքնակենսագիր:

**autobiographie** f. Ինքնակենսագրություն:

**autobiographique** adj. Ինքնակենսագրական:

**autobus** m. *Ավտ.* Ավտոբուս (քաղաքային):

**autocar** m. *Ավտ.* Ավտոբուս (տուրիստական, միջքաղաքային):

**autocensure** f. Ինքնագրաքննություն:

**autochenille** f. *Ռազմ.* Թրթուրանվավոր ավտոմեքենա:

**autochir** f. *Ռազմ.* Շարժական վիրաբուժական հիվանդանոց:

**autochtone** [ɔtɔktɔn, otokton] adj., s. Բնիկ, տեղացի, բնաշխարհիկ:

**autoclave** adj. Ինքնափակ:

– m. Ավտոկլավ:

**autocoat** [ɔtɔkot] m. Կարճ վերարկու (մեքենայում հագնելու համար):

**autocollant, ante** adj. Ինքնակպչուն:

– m. Ինքնակպչուն պիտակ՝ ծրար:

**autocrate** m. Ինքնակալ:

**autocratie** f. Ինքնակալություն:

**autocratique** adj. Ինքնակալական:

**autocritique** f. Ինքնաքննադատություն:

**autocuiseur** m. *Խհրր.* Շուտեփուկ (աման):

**autodafé** m. Հրադատություն:

**autodéfense** f. Ինքնապաշտպանություն:

**autodestructeur, trice** adj. Ինքնաոչնչացնող:

**aotodestruction** f. Ինքնաոչնչացում:

**autodétermination** f. Ինքնորոշում (քաղաքական):

**autodidacte** adj., s. Ինքնուս:

**autodiscipline** f. Ինքնակարգապահություն:

**autodrome** m. Ավտոդրոմ:

**autofécondation** f. Ինքնաբեղմնավորում:

**autofinancement** m. *Առևտր.*, *Ֆին.* Ինքնաֆինանսավորում:

**autofinancer (s')** v. pr. (6): *Առևտր.*, *Ֆին.* Ինքնաֆինանսավորվել:

**autogène** adj. *Բժշկ.* Ինքնածին: // *Տեխ.* Ավտոգենային (soudure):

**autogéré, ée** adj. Ինքնակառավարվող:

**autogestion** f. Ինքնակառավարում:

**autogire** m. *Օդգ.* Ավտոժիր (ուղղաթիռի հին տեսակ):

**autographe** adj., m. Ինքնագիր:

**autographie** f. Նմանահանություն:









**autographier** v. tr. (1): Նմանահանել:

**autographique** adj. Papier autographique, ինքնագրային թուղթ:

**autoguidé, ée** adj. Ինքնավար:

**autolubrifiant, iante** adj. Ավտոմատ կերպով յուղող:

**automate** m. Ավտոմատ:

**automaticité** f. Ավտոմատիկություն, ավտոմատ բնույթ:

**automation** f. Ավտոմատացում:

**automatique** adj. Ավտոմատ: // *Երկթղ.* Ինքնափակ (portillon):

– m. Ավտոմատ ատրճանակ: // *Տեխ.* Ավտոմատիկա:

**automatiquement** adv. Ավտոմատորեն, ավտոմատ կերպով:

**automatisation** f. Ավտոմատացում:

**automatisme** m. Ավտոմատայնություն, ավտոմատիզմ:

**automédon** m. Կառապան:

**automitrailleuse** f. *Ռազմ.* Զրահամեքենա:

**automnal, ale** [ɔtɔnal, otɔnal] adj. Աշնանային:

**automne** [ɔtɔn, otɔn] m. Աշուն:

**automobile** adj. Ինքնաշարժ:

– f. *Ավտ.* Ավտոմոբիլ:

**automobiliste** s. *Ավտ.* Ավտոմոբիլիստ:

**automoteur, trice** adj. Ինքնաշարժ:

**automotrice** f. *Երկթղ.* Ավտովագոն:

**automutilation** f. Ինքնախեղում:

**autonettoyant, ante** adj. Four autonettoyant, ինքնամաքրվող փուռ:

**autonome** adj. Ինքնավար: // Ինքնուրույն, անկախ (groupe, unité):

**autonomie** f. Ինքնավարություն: // Անկախություն: // *Օդգ.* Թռիչքի հասողություն:

**autonomiste** s. Ինքնավարության կողմնակից:

**autoplastie** f. *Բժշկ.* Պլաստիկ վիրահատություն:

**autopompe** f. Հրշեջ մեքենա:

**autoportrait** m. Ինքնանկար, ավտոպորտրետ:

**autopropulsé, ée** adj. Ինքնանետ:

**autopropulseur** adj. Ինքնանետիչ:

**autopropulsion** f. Ինքնանետում:

**autopsie** f. *Բժշկ.* Դիահերձում:

**autoradio** m. Ավտոմեքենայի ռադիո:

**autorail** m. *Երկթղ.* Ավտովագոն:

**autorégulateur, trice** adj. Ինքնակարգավորվող:

**autorisation** f. Թույլտվություն (տե՛ս Permission): // *Իրավբ.* Վավերացում, սանկցիա, լիազորություն:

**autorisé, ée** adj. Թույլատրված: // *Առևտր.* Լիազորված (représentant):

**autoriser** v. tr. (1): Թույլատրել (տե՛ս Permettre). nul n'est autorisé à mentir, ոչ ոքի թույլատրված չէ ստել: // Իրավունք տալ. il se croit autorisé à parler franc, նա իրեն իրավունք է վերապահում անկեղծ խոսել. cette lettre m'autorise à croire que, այս նամակն ինձ հիմք է տալիս հավատալու, որ: // Լիազորել: // *Իրավբ.* Կարգադրություն անել:

– v. pr. **S'autoriser,** իրեն թույլ տալ, իրեն իրավունք վերապահել. s'autoriser de, հիմնվել ինչ-որ բանի վրա:

**autoritaire** adj. Բռնապետական (régime): // Տիրական, հրամայական (ton). իշխել՝ հրամայել սիրող (personne):

**autoritarisme** m. Բռնապետություն: // Տիրականություն:

**autorité** f. Իշխանություն. avoir autorité sur, իշխանություն ունենալ մեկի վրա. faire acte d'autorité, իշխանություն գործադրել: // Իշխանություն, ղեկավարություն. les autorités civiles, քաղաքացիական իշխանությունները. les agents de l'autorité, ոստիկանական ուժերը: // Հեղինակություն, ազդեցություն. avoir de l'autorité sur qqn, մեկի վրա ազդեցություն ունենալ. faire autorité, հեղինակություն ունենալ. faire autorité en matière de, ինչ-որ հարցում հեղինակություն լինել. sans autorité, հեղինակազուրկ: // Հեղինակություն. air d'autorité, հեղինակավոր տեսք: // *Ռազմ.* Autorité militaire, ռազմական իշխանություն: // *Իրավբ.* Par autorité de justice, արդարության ուժով:

**autoroute** f. Ավտոմայրուղի:

**autoroutier, ière** adj. Ավտոճանապարհային:

**autosatisfaction** f. Ինքնաբավարարում:

**autostrade** f. Ավտոմայրուղի:

**autosuggestion** [otosygʒɛstjɔ̃] f. Ինքնաներշնչում:

**autotrophe** adj. *Բսբ.* Ինքնասուն, ավտոտրոֆ:

**autour** adv. Շուրջը. tout autour, շուրջ բոլորը:

– loc. prép. Autour de, շուրջը. autour de la table, սեղանի շուրջը. regarder autour de soi, իր շուրջը նայել:

**autour** m. *Կենդբ.* Բազե:

**autovaccin** m. *Բժշկ.* Ինքնապատվաստ, ավտովակցինա:

**autre** adj. Մյուս. l'autre main, մյուս ձեռքը: // Մյուս, մնացած. ses deux autres chapeaux, նրա մյուս երկու գլխարկները: // Այլ, ուրիշ, տարբեր. c'est une tout autre affaire, դա բոլորովին այլ գործ է. autre chose, այլ բան. pas autre chose, ոչ այլ բան: // Այլ. cela a fait de moi un autre homme, դրա շնորհիվ ես այլ մարդ դարձա: // Նոր. j'ai une autre voiture, ես նոր մեքենա ունեմ: // Անցյալ. l'autre soir, անցյալ երեկո: // Մյուս, այն, գալիք. l'autre monde, այն աշխարհը. un jour ou l'autre, օրերից մի օր: // Մյուս, հակառակ. de l'autre côté de la rue, փողոցի մյուս կողմում. vers l'autre rive, դեպի հակառակ ափը: // Մի այլ, նման. un autre moi-même, իմ երկրորդ եսը: // Եվս մեկ, էլի մեկ. encore un autre, ևս մեկը. aucune autre personne n'est venue, ուրիշ ոչ ոք չեկավ. en quel autre lieu ?, ուրիշ որտե՞ղ. autre chose, մի բան էլ. pas autre chose, էլ ոչինչ: // Nous autres, vous autres, մենք և մեր նմանները, դուք և ձեր նմանները. l'un et l'autre, երկուսն էլ:

– pron. L'autre, մյուսը. un autre, մի ուրիշը: // Les autres, մյուսները. les deux autres, մյուս երկուսը. quelques autres, մի քանի ուրիշները: // D'autres, ուրիշները. à d'autres !, գնա ուրիշին պատմիր. il n'en fait pas d'autres, միշտ նույն սխալներն է անում. il en a vu d'autres, նա դրանից վատ բաներ է տեսել. parler de choses et d'autres, դեսից-դենից խոսել: // D'autre, ուրիշ, այլ. aller de côté et d'autre, այստեղ-այնտեղ գնալ. qui d'autre ?, ուրիշ ո՞վ. quelqu'un d'autre, մեկ ուրիշը. que voulez-vous d'autre ?, ուրիշ ի՞նչ եք ուզում. quoi que ce soit d'autre, ցանկացած այլ բան: // Autre que, այլ. aucun autre que lui, նրանից բացի ոչ մեկը. il n'a pas pu aller à d'autre école que celle-ci, նա սրանից բացի այլ դպրոց չկարողացավ գնալ. qui d'autre que mon frère peut le faire ?, եղբորիցս բացի ո՞վ կարող է դա անել: // *Loc.* L'un ou l'autre, որևէ մեկը, երկուսից մեկը. lequel voulez-vouz ?, l'un ou l'autre, ո՞րն եք ուզում, որևէ մեկը: // L'un et l'autre, թե՛ մեկը, թե՛ մյուսը, երկուսն էլ. l'un et l'autre ont été tués, երկուսն էլ սպանվեցին: // Ni l'un, ni l'autre, ո՛չ մեկը, ո՛չ մյուսը. ni l'un ni l'autre n'est Français, նրանցից ոչ մեկը ֆրանսիացի չէ: // L'un l'autre, les uns les autres, մեկը մյուսին, միմյանց. ils s'aident l'un l'autre, նրանք միմյանց օգնում են. ils sont très dévoués l'un à l'autre, նրանք միմյանց շատ նվիրված են: // L'un … l'autre, մեկը … մյուսը. les uns … les autres, ոմանք … մյուսները. les uns sont des rêveurs, les autres des hommes d'action, ոմանք սիրում են երազել, մյուսները՝ գործել. ils sont arrivés l'un après l'autre, նրանք եկան՝ մեկը մյուսի հետևից: // *Loc.* Comme dit l'autre, ինչպես ասում են. de temps à autre, ժամանակ առ ժամանակ. d'un moment à l'autre, ուր որ է, րոպե առ րոպե. une idée comme une autre, վատ միտք չէ:

**autrefois** adv. Նախկինում, առաջներում, վաղուց. d'autrefois, երբեմնի, հնօրյա:

**autrement** adv. Շատ ավելի. այլ կերպ, հատկապես. եթե ոչ, այլապես. il n'y a pas moyen de faire autrement, հնարավոր չէ այլ կերպ վարվել:

**Autriche** f. *Աշխգր.* Ավստրիա:

**autrichien, ienne** adj. Ավստրիական:

– s. Ավստրիացի:

**autruche** f. *Կենդբ.* Ջայլամ. plume d'autruche, ջայլամի փետուր:

**autrui** pron. Այլ ոք, ուրիշները. les enfants d'autrui, ուրիշների երեխաները:

– m. Մերձավոր:

**auvent** m. *Ճրտրպ.* Քիվ: // *Գյուղտ.* Ծածկույթ: // *Ավտ.* Կապոտ:

**auvergnat, ate** adj. Օվերնական, Օվերնի:

– s. Օվերնի բնակիչ՝ բնակչուհի:

**Auvergne** f. *Աշխգր.* Օվերն:

**aux** art. Տե՛ս A, Le:

**auxiliaire** adj. Օժանդակ. bureau auxiliaire, գրասենյակի բաժանմունք: // *Ռազմ.* Services auxiliaires de l'armée, ապաշարային ծառայություն:

– m. Օգնական (տե՛ս Aide): // *Քրկն.* Օժանդակ բայ: // *Ռազմ.* Ապաշարային ծառայություն. օժանդակ զորքեր:

**auxiliairement** adv. Օժանդակ կերպով:

**auxquels** Տե՛ս Lequel:

**avachi, ie** adj. Հնամաշ, ձևից ընկած (chaussures): // *Խսկց.* Անուժ, թույլ (personne):

**avachir** v. tr. (2): Փափկացնել (le cuir): // *Խսկց.* Թուլացնել (les gens):

– v. pr. **S'avachir,** ձևը կորցնել, լայնանալ (chaussure, habit). թուլանալ (tissu): // *Խսկց.* Թուլանալ (personne):

**avachissement** m. Մաշվելը, լայնանալը: // Թուլացում:

**aval** m. *Առևտր.* Մուրհակի երաշխավորություն, փոխանակագիր. donner son aval à, մուրհակի երաշխավորություն տալ:

**aval** m. Ցածրավայր. ստորին հոսանք. en aval, գետն ի վայր. en aval de, դեպի ցած, ցածում:





**avalage** m. Իջեցում (գինու տակառների): // *Ծով.* Հոսանքն ի վայր գնալը (նավի):

**avalanche** f. Ձյունահյուս, ձնհյուս: // *Փխբ.* Տարափ, հեղեղ (de paroles, d'injures, de factures). ձնահյուս առաջացնող:

**avalancheux, euse** adj. Ձնահյուսերի ենթակա:

**avalement** m. Կուլ տալը:

**avaler** v. tr. (1): Կուլ տալ (տե՛ս Engloutir, Ingurgiter). avaler de travers, կատիկն ընկնել: // *Փխբ.* Կուլ տալ, տանել, հանդուրժել (un affront): // *Խսկց.* Հավատալ (une histoire): // *Խսկց.* Avaler des yeux, աչքերով հոշոտել:

– v. pr. **S'avaler,** կուլ գնալ:

**avaleur, euse** s. Կուլ տվող. avaleur de sabres, թուր կուլ տվող աճպարար: // Որկրամոլ, շատակեր:

**avaliser** v. tr. (1): *Առևտր.*, *Փխբ.* Երաշխավորել:

**avaliseur, euse, avaliste,** s. *Առևտր.* Մուրհակը երաշխավորող:

**à-valoir** m. *Ֆին.* Կանխավճար:

**avance** f. Առաջխաղացում: // Առաջնություն, առավելություն. avoir une sérieuse avance sur, մեկի հանդեպ զգալի գերակշռություն ունենալ. prendre de l'avance sur, մեկի նկատմամբ առավելության հասնել: // Առաջ լինելը (ժամացույցի). ma montre est en avance, ժամացույցս առաջ է. elle a dix minutes d'avance, տասը րոպե առաջ է: // Pl. Նախաքայլեր. faire des avances à, նախաքայլեր անել. répondre aux avances de, ընդառաջ գնալ: // Ավանս, կանխավճար, կանխավարձ: // *Մարզ.* Առավելություն: // *Խսկց.* La belle avance !, կարծում ես շա՞տ բան կշահես: // A l'avance, d'avance, par avance, նախօրոք, վաղօրոք, կանխապես. arranger d'avance, նախօրոք կարգավորել. escompter à l'avance, կանխատեսել. jouir d'avance de, նախօրոք վայելել. payé d'avance, նախօրոք վճարված: // En avance, ժամանակից շուտ. être en avance, ժամանակից շուտ եկած լինել. arriver en avance, ժամանակից շուտ գալ:

**avancé, ée** adj. Առաջացած, ուշ (âge, heure): // Առաջավոր (civilisalion): // Առաջադեմ (élève, idée): // Առաջ գնացած. n'être pas plus avancé, նույն տեղում լինել, ոչինչ հասած չլինել: // *Խհրր.* Գերհասուն (fruit). փչանալուն մոտ, ոչ թարմ (poisson, viande): // *Ֆին.* Ավանսով տրված (argent): // *Ռազմ.* Առաջավոր (poste): // *Երկթղ.* Հեռավոր (signal):

**avancée** f. Ելուստ, առաջ ընկած մաս: // *Ռազմ.* Առաջավոր գիծ, առաջավոր դիրք:

**avancement** m. Ելուստ, առաջ ընկած մաս: // Առաջ տանելը, առաջ տեղափոխելը (de l'heure, d'un pion): // Առաջադիմություն, առաջխաղացում, առաջընթաց (des études, des recherches, des sciences): // Առաջխաղացում, առաջ գնալը, պաշտոնի բարձրացում. recevoir de l'avancement, պաշտոնի բարձրացում ստանալ. tableau d'avancement, պաշտոնի բարձրացումների ցուցակ:

**avancer** v. tr. (5): Առաջ տանել (un siège, un pion). մեկնել (la main): // Արագացնել (le départ, la mort). առաջ դնել (une pendule). հետաձգել (une réunion): // *Ֆին.* Կանխավճար տալ, ավանսով տալ: // *Փխբ.* Առաջ տանել (une affaire). զարգացնել (la science): // *Փխբ.* Առաջ քաշել, առաջադրել (une idée). բերել (des raisons): // *Խսկց.* Օգուտ տալ, օգնել (qqn). cela ne nous avance pas beaucoup, դա մեզ այնքան էլ չի օգնում:

– v. intr. Առաջ գնալ, առաջ շարժվել, առաջանալ. continuer à avancer, շարունակել առաջ գնալ. faire avancer, առաջ շարժել. շտապեցնել: // Առաջ գալ, դուրս ցցվել (saillie): // Առաջ ընկնել (montre): // Առաջխաղացում՝ պաշտոնի բարձրացում ստանալ (fonctionnaire): // *Փխբ.* Առաջ գնալ, առաջխաղացում ունենալ, առաջադիմել (affaire, travail, civilisation):

– v. pr. **S'avancer,** առաջ գալ. առաջ գնալ. առաջադիմել: // Առաջանալ, առաջ շարժվել (journée): // Առաջանալ, կարկառվել, ցցվել: // Առաջ անցնել, հեռու գնալ:

**avanie** f. Տե՛ս Affront:

**avant** prép. Առաջ, նախքան, շուտ. avant tout, ամենից առաջ. avant peu, շուտով. il ne viendra pas avant neuf heures, նա ժամը իննից շուտ չի գա:

– adv. Առաջ, նախկինում. trois jours avant, երեք օր առաջ: // Հեռու, խոր. très avant dans le bois, խոր անտառում. plus avant, ավելի հեռու:

– loc. prép. Avant de, նախքան, առաջ, մինչև:

– loc. conj. Avant que, մինչև որ:

– m. Առջևի մաս, առաջամաս: // *Ծով.* Ցռուկ, քիթ, առջևի մաս (նավի): // *Օդգ.* Առջևի մաս (օդանավի): // *Ավտ.* Roue avant, առջևի անիվ: // *Մարզ.* Հարձակվող (ֆուտբոլիստ): // *Փխբ.* Aller de l'avant, առաջնորդել: // *Loc.* D'avant, նախորդ. la nuit d'avant, նախորդ գիշեր: // En avant, առաջ, դեպի առաջ. se précipiter en avant, առաջ նետվել. faire un pas en avant, մի քայլ առաջ գնալ: // **Avant-bec,** m. Ջրահատ: // **Avant-bras,** m. Նախաբազուկ, ծղի: // **Avant-carré,** m. *Ծով.* Դեկասարք: // **Avant-centre,** m. *Մարզ.* Կենտրոնական հարձակվող: // **Avant-corps,** m. Նախագավիթ: // **Avant-coureur,** adj.,

m. Ազդարար. signe avant-coureur, նախանշան: // **Avant-dernier, ère** adj. Նախավերջին: // **Avant-garde,** f. Ավանգարդ, առաջապահ: // **Avant-goût,** m. Նախաճաշակ: // **Avant-guerre,** m. Նախապատերազմյան շրջան: // **Avant-hier,** adv. Երեկ չէ առաջին օրը: // **Avant-port,** m. *Ծով.* Ավանպորտ, նախածոց, նախանավահանգիստ: // **Avant-poste,** m. *Ռազմ.* Առաջապոստ, նախապոստ: // **Avant-première,** f. *Թատր.* Գլխավոր փորձ: // **Avant-projet,** m. Նախնական պլան: // **Avant-propos,** m. Նախաբան: // **Avant-scène,** f. Նախաբեմ, ավանսցենա: // **Avant-toit,** m. Քիվ, ծածկ: // **Avant-veille,** f. Երկու օր առաջ:

**avantage** m. Շահ, օգուտ. avantage pécuniaire, դրամական շահ. tirer avantage de, օգուտ քաղել. trouver son avantage dans, իր շահը տեսնել մի բանում: // Առավելություն, գերակշռություն (տե՛ս Dessus). ils avaient l'avantage, նրանք առավելություն ունեին. prendre l'avantage sur, առավելության հասնել մեկի հանդեպ. remporter l'avantage sur, գերակշռության հասնել, հաղթանակ տանել մեկի հանդեպ: // Հաճույք, պատիվ. l'avantage de vous connaître, ձեզ ճանաչելու պատիվը: // Նպաստավորություն. changer à son avantage, դեպի լավը փոխվել. être à son avantage, լավ տեսք ունենալ, լավ երևալ: // *Ռազմ.* Գերակշռություն: // *Իրավք.* Նվիրատվություն. à titre d'avantage, որպես նվիրատվություն:

**avantager** v. tr. (7): Նպաստել, առավելություն տալ: // Շահեկան տեսք տալ, սազել:

**avantageux, euse** adj. Շահեկան, ձեռնտու (marché, prix): // Նպաստավոր: // Սազող: // Գերիշխող, ինքնավստահ (ton):

**avantageusemant** adv. Նպաստավոր ձևով:

**avare** adj. Ժլատ, գծուծ, ագահ (տե՛ս Avaricieux):
– s. Ժլատ՝ գծուծ՝ ագահ մարդ (տե՛ս Ladre):

**avariable** adj. Շուտ փչացող:

**avarice** f. Ժլատություն, գծուծություն, ագահություն:

**avaricieux, euse** adj. Գծուծ, կծծի:

**avarie** f. Փչացում, փչանալը, վնասվելը (de marchandises). subir une avarie, փչանալ, վնասվել: // *Ծով.* Վնաս: // *Տեխ.* Վնասվածք, վթարանք:

**avarié, ée** f. Գերհասուն, անցած, փչացած (fruit). վնասված, փչացած (machandises). հոտած (viande):

**avarier (s')** v. pr. (1): Փչանալ, վնասվել (marchandises). հոտել (viande):

**avatar** m. Փոփոխություն: // Կերպարանափոխություն, փոխակերպում: // Փորձանք, անհաջողություն:

**Ave** [ave], **Ave Maria** [avemarja] m. invar. *Եկեղ.* Ողջո՜ւյն քեզ, Մարիամ, Ավե, Մարիա:

**avec** prép. Հետ. travailler avec qqn, աշխատել մեկի հետ. offrir une ressemblance avec qqn, մեկի հետ նմանություն ունենալ. être d'accord avec qqn, մեկի հետ համաձայն լինել: // *Համապատասխանում է գործիական հոլովի որոշ գործառությունների* (*ձև, միջոց*). avec patience, համբերությամբ. avec l'intention de, մտադրությամբ. avec l'aide de Dieu, Աստծո օգնությամբ: // Ընթացքում, հետ. avec le temps, ժամանակի ընթացքում. blanchir avec l'âge, տարիքի հետ սպիտակել: // Հանդերձ, չնայած. avec toute sa gloire il n'est pas heureux, չնայած իր փառքին, նա երջանիկ չէ: // *Համապատասխանում է բացառական հոլովի որոշ գործառությունների.* combustible fait avec du charbon, ածխից պատրաստված վառելանյութ. distinguer le bleu d'avec le vert, կապույտը տարբերել կանաչից: // *Loc.* Avec ça, բացի դրանից. et avec ça ?, ուրիշ որևէ բան գնո՞ւմ եք. avec ça que, չհաշված որ, էլ չասենք, որ:

**aveline** f. *Բսբ.* Արքայակաղին, տկողին:

**aven** [avɛn] m. *Աշխգր., Երկրբ.* Խանդակ:

**avenant, ante** adj. Հաճելի, դուրեկան. սիրալիր (տե՛ս Aimable):
– m. A l'avenant, ըստ պատշաճի, համապատասխան ձևով:

**avenant** m. *Իրավք.* Լրացուցիչ համաձայնագիր. հավելված:

**avènement** m. Գալուստ (տե՛ս Arrivée, Venue): // Գահ բարձրանալը, գահակալություն, իշխանության հասնելը:

**avenir** m. Ապագա. à l'avenir, ապագայում, սրանից հետո: // *Փխբ.* Ապագա, հեռանկար. un bel avenir devant soi, առջևում մեծ ապագա. un garçon d'avenir, խոստումնալից տղա:

**avenir, à-venir** m. invar. *Իրավք.* Հակառակ կողմին դատարան կանչելու ծանուցագիր:

**Avent** m. *Եկեղ.* Քրիստոսի գալուստը:

**aventure** f. Արկած (տե՛ս Péripétie). chercher aventure, արկածներ որոնել: // Սիրային արկած (amoureuse): // Բախտ, բախտագրություն. dire la bonne aventure, բախտ գուշակել. diseuse de bonne aventure, բախտագուշակ: // Բախտ, պատահականություն. à l'aventure, պատահական ձևով, բախտին ապավինելով. d'aventure, պատահաբար:






**aventuré, ée** adj. Վտանգավոր (տե՛ս Risqué):

**aventurer** v. tr. (1): Վտանգել, վտանգի ենթարկել:
– v. pr. **S'aventurer,** վտանգի ենթարկվել, իրեն վտանգի ենթարկել, համարձակություն ցուցաբերել:

**aventureusement** adv. Համարձակորեն, խիզախորեն, իրեն վտանգի ենթարկելով:

**aventureux, euse** adj. Խիզախ, համարձակ (տե՛ս Audacieux, Entreprenant): // Վտանգավոր (տե՛ս Hasardeux):

**aventurier, ière** s. Արկածախնդիր, բախտախնդիր. ավանտյուրիստ:

**aventurine** f. Աստղաքար:

**aventurisme** m. Ավանտյուրիզմ (քաղաքականության մեջ):

**avenu, ue** adj. Non avenu, անվավեր. nul et non avenu, գոյություն չունեցող:

**avenue** f. Ծառազարդ ճանապարհ, ծառուղի: // Պողոտա: // *Փխբ.* Ուղի, միջոց:

**avéré, ée** adj. Սահմանված, հաստատված (տե՛ս Confirmé, Établi, Notoire): // Ապացուցված (crime, fait): // Ճանաչված, հայտնի (criminel):

**avérer** v. tr. (5): Սահմանել, հաստատել. ապացուցել, ստուգել, ճշտել: // *Իրավք.* Ապացուցել:
– v. pr. **S'avérer,** պարզվել. il s'est avéré que, պարզվեց, որ:

**avers** m. Երեսակողմ, երես (դրամի):

**averse** f. Տեղատարափ անձրև: // *Փխբ.* Հեղեղ, տարափ:

**aversion** f. Սաստիկ ատելություն, մեծ հակակրանք (pour qqn): // Նողկանք, գարշանք, խորշանք (pour qqch). prendre en aversion, ատել:

**averti, ie** adj. Տեղյակ, գիտակ, փորձված: // Նախազգուշացված. se tenir pour averti, աչքի առաջ ունենալ, զգուշանալ:

**avertir** v. tr. (2): Հայտնել. տեղեկացնել (de): // Նախազգուշացնել (de). զգուշացնել (de):

**avertissement** m. Տեղեկացում: // Նախազգուշացում: // Առաջաբան: // *Ֆին.* Ծանուցագիր:

**avertisseur, euse** adj. Տեղեկացնող, ազդարարող, նախազգուշացնող:
– m. Տեղեկացնող՝ նախազգուշացնող սարք: // Ազդանշան. avertisseur d'incendie, հրդեհի ազդանշան: // *Ավտ.* Ավտոմեքենայի ազդանշան:

**aveu** m. Խոստովանություն. de son propre aveu, սեփական խոստովանությամբ. faire l'aveu de, խոստովանել, ընդունել. passer aux aveux complets, ամեն ինչ խոստովանել: // Համաձայնություն, հավանություն (տե՛ս Approbation). de l'aveu général, ընդհանուր հավանությամբ. sans l'aveu de son père, առանց հոր համաձայնության: // *Loc.* Individu sans aveu, վատահամբավ անձնավորություն:

**aveuglant, ante** adj. Կուրացուցիչ, շլացուցիչ: // *Փխբ.* Անհերքելի:

**aveugle** adj. Կույր. aveugle de naissance, ի ծնե կույր: // *Ճրտրպ.* Խուլ, կեղծ (fenêtre): // *Փխբ.* Կույր (amour, haine):
– s. Les aveugles, կույրերը: // *Lòc.* En aveugle, կուրորեն:

**aveuglement** m. Կուրացում: // *Փխբ.* Կուրություն: // *Ծով.* Փակելը, խցելը (d'une fuite):

**aveuglément** adv. Կուրորեն, չմտածված:

**aveugler** v. tr. (1): Կուրացնել (qqn): // Շլացնել: // *Ծով.* Փակել, խցել, կանգնեցնել (une voie d'eau): // *Փխբ.* Կուրացնել (qqn). մթագնել (la raison):
– v. pr. **S'aveugler,** կուրանալ: // *Փխբ.* Ճշմարտությունից փախչել, աչք փակել (sur):

**aveuglette (à l')** loc. adv. Կուրորեն:

**aveulir** v. tr. (2): Թուլացնել, կամազրկել:
– v. pr. **S'aveulir**, թուլանալ, կամազրկվել:

**aveulissement** m. Կամազրկություն:

**aviateur, trice** s. *Օդզ.* Օդաչու:

**aviation** f. Օդագնացություն: // Ավիացիա:

**avicole** adj. Թռչնաբուծական:

**aviculteur, trice** s. Թռչնաբույծ:

**aviculture** f. Թռչնաբուծություն:

**avide** adj. Ագահ, որկրամոլ (տե՛ս Glouton): // *Փխբ.* Avide de, ագահ, ընչաքաղց, ծարավի. très avide d'argent, չափազանց փողասեր:

**avidement** adv. Ագահորեն, ագահաբար:

**avidité** f. Ագահություն, որկրամոլություն: // Ագահություն, ընչաքաղցություն. ուսման ծարավ:

**avilir** v. tr. (2): Նվաստացնել, ստորացնել, ցածրացնել, պատվազուրկ անել: // *Առևտր.* Ցածրացնել, արժեզրկել:
– v. pr. **S'avilir,** նվաստանալ, ստորանալ, ցածրանալ: // *Առևտր.* Արժեզրկվել, ընկնել:

**avilissant, ante** adj. Նվաստացնող, ստորացնող:

**avilissement** m. Նվաստացում, ստորացում: // *Առևտր.* Արժեզրկում:

**aviné, ée** adj. Գինուց հարբած:

**aviner** v. tr. (1): Գինոտել (un fût):
– v. pr. **S'aviner.** *Խսկց.* Կոնծել:

**avion** m. *Օդզ.* Օդանավ, ինքնաթիռ. avion de bombardement, ռմբակոծիչ. avion de guerre, ռազմական ինքնաթիռ. avion à réaction, ռեակ-

տիվ ինքնաթիռ. avion de reconnaissance, de transport, de tourisme, հետախուզական, տրանսպորտային, տուրիստական ինքնաթիռ. par avion, ավիա (poste). ինքնաթիռով (voyage): // **Avion-cargo,** m. Բեռնատար ինքնաթիռ: // **Avion-citerne,** m. Նավթատար ինքնաթիռ: // **Avion-école,** m. Ուսումնական ինքնաթիռ:

**avionnette** f. *Օդգ.* Թեթև ինքնաթիռ:

**aviron** m. *Ծով.* Թիակ. faire de l'aviron, թիավարել:

**avis** m. Կարծիք. à mon avis, իմ կարծիքով. être d'avis que, այն կարծիքի լինել, որ: // Խորհուրդ. l'avis des juges, դատարանի որոշումը. prendre, suivre l'avis de qqn, մեկի խորհրդին հետևել. profiter d'un avis, խորհրդից օգտվել: // Հիշեցում, նախազգուշացում. տեղեկացում. lettre d'avis, ծանուցում. jusqu'à nouvel avis, մինչ նոր կարգադրություն. sauf avis contraire, եթե միայն այլ կարգադրություն չլինի. sans avis préalable, առանց նախազգուշացման:

**avisé, ée** adj. Զգույշ, զգուշավոր, շրջահայաց (տե՛ս Judicieux, Prudent). bien avisé, քաջատեղյակ. mal avisé, անտեղյակ:

**aviser** v. tr. (1): Նկատել, նշմարել: // Հայտնել, տեղեկացնել, նախազգուշացնել (տե՛ս Avertir, Informer, Prévenir):

– v. intr. Խորհել, մտածել. aviser à qqh, մտածել՝ խորհել մի բանի մասին. aviser aux moyens de, մտածել, թե ինչպես. j'y aviserai, այդ մասին կմտածեմ, կտեսնեմ, թե ինչ կարելի է անել:

– v. pr. **S'aviser** (de), գլխում միտք ծագել. մտքով անցկացնել, համարձակվել. մտածել, ձևը գտնել (de):

**aviso** m. *Ծով.* Ավիզո, հետախուզական նավ:

**avitaminose** f. *Բժշկ.* Վիտամինների պակաս, ավիտամինոզ:

**aviver** v. tr. (1): Ավելի վառ դարձնել (une couleur). բորբոքել (le feu). մաքրել, փայլեցնել (un métal): // Գրգռել (l'appétit), բորբոքել (la colère). պայծառացնել (le regard): // *Բժշկ.* Նորոգել (une plaie):

– v. pr. **S'aviver,** բորբոքվել (*ուղղ. և փխբ.*):

**avocaillon** m. *Իրավք.* Ողորմելի՝ իրենից ոչինչ չներկայացնող փաստաբան:

**avocasserie** f. *Հնց.* Զրպարտություն, բանսարկություն, խարդախություն:

**avocassier, ière** adj. *Իրավք.* Զրպարտիչ, բանսարկու:

– m. *Իրավք.* Խարդախ փաստաբան:

**avocat, ate** s. *Իրավք.* Փաստաբան, դատապաշտպան. avocat conseil, փաստաբան, դատապաշտպան. avocat consultant, իրավախորհրդատու, յուրիսկոնսուլտ. avocat général, դատախազի տեղակալ. avocat de la partie adverse, հակառակ կողմի փաստաբան. avocat d'office, ի պաշտոնե փաստաբան. membre du conseil de l'Ordre des avocats, փաստաբանների կոլեգիայի խորհրդի անդամ: // *Փխբ.* Փաստաբան. se faire l'avocat de, մեկի օգտին խոսել՝ փաստաբանել:

**avocat** m. *Բսբ.* Ավոկադենու պտուղը, ավոկադո:

**avocatier** m. Ավոկադենի:

**avoine** f. *Բսբ.* Վարսակ. farine d'avoine, վարսակալյուր. folle avoine, խրբուկ, խոլավարսակ:

**avoir** v. tr. (19): Ունենալ. avoir de l'argent, փող ունենալ. avoir un bon fils, լավ որդի ունենալ. avoir du crédit, վստահություն ունենալ. avoir les yeux bleus, կապույտ աչքեր ունենալ. ne pas avoir de volonté, կամք չունենալ, կամազուրկ լինել. avoir chaud, շոգել. avoir soif, ծարավ լինել. avoir froid, մրսել. avoir peur, վախենալ. avoir vingt ans, քսան տարեկան լինել: // Տածել. avoir en haute estime, մեծ հարգանք տածել: // Ցուցաբերել. avoir de l'intérêt pour, հետաքրքրություն ցուցաբերել մի բանի հանդեպ: // Ստանալ, ձեռք բերել, հասնել. il aura une réponse, նա պատասխան կստանա. elle m'aura cet emploi, նա ինձ համար ձեռք կբերի այդ աշխատանքը. l'arbre est haut, pouvez-vous avoir la pomme ?, ծառը բարձր է, կարո՞ղ եք հասնել խնձորին. je n'ai pas pu l'avoir (au téléphone), չկարողացա նրա հետ կապվել (հեռախոսով): // Անել. il eut un geste de désespoir, նա հուսահատություն արտահայտող շարժում արեց: // Հագած լինել, կրել. elle avait un manteau de sport, նա սպորտային ոճի վերարկու էր հագել: // *Խսկց.* Հիմարացնել, խաբել. on t'a eu, քեզ խաբել են: // *Խսկց.* Հաղթել, հաղթել. on les aura, նրանց հախից կգանք: // *Loc.* Avoir à, անելիք ունենալ. j'ai à vous parler, ձեզ հետ խոսելիք ունեմ. en avoir à (կամ) contre, մեկի դեմ թշնամություն ունենալ. en avoir assez, ձանձրանալ, հոգնել. j'en ai assez, ձանձրացել եմ, հոգնել եմ. il en a eu pour vingt euros, նա պետք է վճարեր քսան եվրո. il n'avait qu'à, նրան մնում էր միայն:

– v. impers. Y avoir, լինել. il y a un doute, մի կասկած կա. il y avait plusieurs livres, մի քանի գիրք կար. il y a loin, հեռու է. il ne doit pas y avoir de retard, ուշացում չպետք է լինի. il ne





peut pas y avoir de doute, կասկած չի կարող լինել: // Առաջ. mon frère était soldat il y a trois ans, եղբայրս երեք տարի առաջ զինվոր էր. elle était partie en Amérique il y avait deux ans, նա մեկնել էր Ամերիկա երկու տարի առաջ. il y a deux mois que j'ai passé mon examen, երկու ամիս առաջ եմ քննությունս հանձնել. il y a deux jours que je t'attends, երկու օր է քեզ եմ սպասում. il y a trop longtemps que ça dure, դա չափազանց երկար տևեց. il y avait vingt minutes qu'il nageait, արդեն քսան րոպե լողում էր: // *Loc.* Il doit y avoir quelque chose, պետք է, որ ինչ-որ պատճառ լինի. il n'y a rien de grave, ոչ մի լուրջ բան չկա. il y a un instant, հենց նոր. il n'y a rien à faire, ոչինչ հնարավոր չէ անել. il n'y a pas de quoi, չարժե. qu'y a-t-il ?, ի՞նչ է պատահել:

– m. Ունեցվածք: // *Ֆին.* Կարողություն. avoirs étrangers, օտարերկրյա ակտիվներ: // *Առևտր.* Կրեդիտ:

**avoisinant, ante** adj. Հարևան, հարակից (տե՛ս Adjacent):

**avoisiner** v. tr. (1): Սահմանակից՝ հարակից լինել. մոտ՝ մերձակայքում գտնվել:

**avorté, ée** adj. Վիժված: // *Փխբ.* Ձախողված, անհաջող:

**avortement** m. *Բժշկ.* Վիժում, աբորտ:

**avorter** v. intr. (1): *Բժշկ.* Վիժել. faire avorter, վիժեցնել. se faire avorter, աբորտ անել: // *Բսբ.* Թերաճել, թերաճ մնալ: // *Փխբ.* Ձախողվել. faire avorter, ձախողել:

**avorteur, euse** s. Աբորտ անող:

**avorton** m. Վիժվածք: // *Բսբ.* Թերաճ բույս: // *Փխբ.* Վիժվածք, տականք:

**avouable** adj. Վայելուչ, պատշաճ:

**avoué** m. *Իրավք.* Հավատարմատար:

**avoué, ée** adj. Խոստովանված, ընդունված (տե՛ս Admis, Confessé):

**avouer** v. tr. (1): Խոստովանել, ընդունել:

– v. pr. **S'avouer,** խոստովանվել (faute). s'avouer coupable, իրեն մեղավոր ճանաչել:

**avril** m. Ապրիլ. le premier avril, ապրիլի մեկը, խաբելու օրը. poisson d'avril, ապրիլմեկյան կատակ:

**avulsion** f. *Բժշկ.* Հեռացում: // *Իրավք.* Բռնի անջատում:

**avunculaire** adj. Մորեղբորը՝ հորեղբորը՝ մորաքրոջը՝ հորաքրոջը վերաբերող:

**axe** m. *Մաթ.*, *Ֆիզ.* Առանցք: // *Տեխ.* Առանցք, լիսեռ, սռնի:

**axer** v. tr. (1): *Խսկց.* Կենտրոնացնել. axer un roman sur une intrigue, վեպը կառուցել որևէ ֆաբուլայի շուրջ:

**axial, ale** adj. Առանցքային:

**axillaire** [aksillɛʀ] adj. *Բժշկ.* Անութային:

**axiomatique** adj. *Մաթ.* Աքսիոմային:

– f. *Մաթ.* Աքսիոմատիկա:

**axiome** m. Աքսիոմ, աքսիոմա:

**axis** [aksis] m. *Բժշկ.* Առնակ, վզային երկրորդ ողը:

**axone** m. *Բժշկ.* Աքսոն:

**axonge** f. Խոզի հալած ճարպ: // *Ռազմ.* Հրացանի յուղաքսուք:

**ayant** Տե՛ս Avoir: // **Ayant cause,** m. *Իրավք.* Իրավահաջորդ: // **Ayant droit,** m. *Իրավք.* Օրինական տեր. հայցվոր:

**ayons** Տե՛ս Avoir (19):

**azalée** f. *Բսբ.* Նազվարդ, լեռնվարդ:

**Azerbaïdjan** m. *Աշխգր.* Ադրբեջան:

**azimut** [azimyt] m. *Աստղ.* Ազիմուտ:

**azimutal, ale** adj. *Աստղ.* Ազիմուտային:

– m. Ազիմուտային կողմնացույց:

**azoïque** adj. *Քիմ.* Անիլին պարունակող: // *Երկրբ.* Ազոյան:

**azotate** m. *Քիմ.* Բորակատ, նիտրատ, ազոտաթթվային աղ. azotate de potassium, բորակ, սելիտրա:

**azote** m. *Քիմ.* Ազոտ:

**azoté, ée** adj. *Քիմ.* Ազոտական, ազոտային, ազոտ պարունակող:

**azoter** v. tr. (1): *Քիմ.* Ազոտավորել:

**azoteux, euse** adj. *Քիմ.* Ազոտաթթվային:

**azotique** adj. *Քիմ.* Բորական, բորակային:

**azotite** m. *Քիմ.* Նիտրիտ, ազոտային թթվի աղ:

**Azov (mer d')** *Աշխգր.* Ազովի ծով:

**aztèque** [aztɛk] adj. Ացտեկական:

– s. Ացտեկ: // *Փխբ.* Ոչնչություն, չնչին մարդ:

**azur** m. Լազուր. d'azur, լազուր, լազուրե. la Côte d'Azur, Լազուրե ափ:

**azuré, ée** adj. Լազուրե, լազուրագույն:

**azurer** v. tr. (1): Կապույտ գույնի ներկել. լեղակել:

**azygos** [azigos] adj. *Բժշկ.* Անզույգ:

– f. *Բժշկ.* Անզույգ երակ:

**azyme** adj. Անխմոր, անթթխմոր, բաղարջ:

– m. Բաղարջ հաց: